

# ԳԱՐՆԱՆ ՀԱՆԴԵՍ

*ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ*

Նիհարել է սառցի լուլան,
Աղի արցունք է թափում.
— Ի՜նչ անխիղճն է արևն ալվան,
Ինձ վառում է ու ժպտում:

Եվ սառույցներն այս սրածայր
Չեն դիմանում էլ տաքին,
Կտուրներից հենց գլխիվայր
Իրենց նետում են գետին:

Բարդիները հպարտ-հպարտ
Շորորում են դեռ անշոր,
Նայում հեռուն աչքով անթարթ,
Երազում են անուշ օր:

Մանկացել է արևն էլ տաք,
Պահմտոցի է խաղում.
Մեկ մտնում է թուխ ամպի տակ,
Մեկ էլ աչքով ճիկ անում:

Քամին՝ գարնան ցրիչը հին,
Տակին՝ թեթև մի սահնակ,
Սլանում է, հասնում ձորին,
Հետո նստում սավառնակ:

Առվակները գլխապատառ
Սլանում են սարերից...
— Մեզ գա՛րու՜նն է կանչել զառ-վառ,
Ուշանում ենք հանդերից...

Քար ու կոշտեր դեն է նետում
Գիժ գետակը սրընթաց
Եվ ափերն է ծեծում, ծեծում...
— Ճամփա՜,— գոռում զայրացած:

Հազար մի շունչ, հազար մի բույս
Փայփայում են ջրերին.
— Գարունն եկա՜վ, աչքներդ լո՜ւյս...
Համբավ տարեք բոլորին...

*Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

digitised by A.R.A.R.@

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ
Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ
ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶ
ՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆ
ՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ
ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

# ՊԻՈՆԵՐ

Լույս է տեսնում
1923 թվականից

№ 3 ՄԱՐՏ
1966 Թ.




ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Արևը ուղիղ ընկնում էր նրա վրա, իսկ նա, փոքրիկ ու կլոր, այնպես կուրացուցիչ էր փայլում, որ տղան նույնիսկ փորձ էլ չարեց ընկած տեղից բարձրանալ։ Նա պառկած էր բակի փոշու մեջ, փորի վրա, իսկ հենց նրա քթի առաջ փայլում էր բոլորովին նոր մի տասկոպեկանոց։ Տղան դեռ երբեք այդքան նոր, այդքան փայլուն ու գեղեցիկ տասկոպեկանոց չէր տեսել, այն էլ՝ փոշու մեջ ընկած։ Մի պահ նա նույնիսկ վախենում էր դիպչել այդ սիրուն ու կլորիկ տասկոպեկանոցին։ Բայց հաջորդ վայրկյանին նա վերցրեց դրամը, ամուր սեղմեց բռի մեջ և ոտքի ցատկելով՝ խրեց գրպանի ամենահեռավոր անկյունը։ Տղայի սիրտը անհանգիստ տրոփում էր. երջանիկ հուզմունքից նա անգամ դժվարանում էր շնչել։

Լևոնը հազիվ տեսավ իր ոտքերի մոտ գլորվող գնդակը։ Նա հարվածեց գնդակին ու առաջ վազեց։ Դարպասը նա չէր տեսնում, բայց զգում էր, որ այն իր դիմացն է և անհավատալի արագությամբ ավելի ու ավելի է մոտենում։ Լևոնը միշտ գնդակին հարվածում էր ամբողջ ուժով։ Նա ամենալավ ֆուտբոլ խաղացողն էր, հենց դրա համար և ամենաանկարգ տղան, որովհետև գնդակը նրա հարվածներից հետո ամենից հաճախ էր դիպչում առաջին հարկի պատուհաններին և ջարդում ապակիները։ Լևոնը զգաց, որ հարվածելու ժամանակն է։ Իր առաջ նա տեսավ դարպասի մեջ կանգնած փոքրիկ Պետիկի բարակ ոտքերը և ամբողջ ուժով հարվածեց գնդակին։

Առաջինը Աշոտն զգաց, որ ինչ-որ անուղղելի բան կատարվեց։ Նրա ականջին հասավ փշրվող ապակու սուր և տհաճ զրնգոցը։ Նա նույնիսկ տեսավ Պետիկի լայն բացված աչքերը, և նույն պահին Պետիկը խուճապահար մի կողմ փախավ։ Հենց իր կողքին Աշոտը լսեց Լևոնի ձայնը.

Փախի՛ր։

Բայց շփոթված ու վախեցած Աշոտը նույնիսկ փախչելու փորձ էլ չարեց։ Ամբողջ բակում նա երևի միակն էր, որ դեռ ոչ մի ապակի չէր կոտրել, միակն էր, որ չէր պատասխանել մեծերին, և այդ ամենի համար էլ նրան սիրում էին ու գովաբանում ճիշտ այնքան, որքան չէին սիրում Լևոնին ու որքան գանգատվում էին նրանից։ Փշրված ապակու կտորները այնքան շատ էին, կարծես հազարավոր ապակիներ էին ջարդել, բոլորն էլ փոքրիկ հայելիների նման փայլում էին արևի տակ։ Լուսամուտից երևաց տղամարդու կարմրած ու բարկացած դեմքը։

Ո՞վ էր, — հարցրեց նա։

Ես չէի, — ընդհատվող ձայնով պատասխանեց Աշոտը։

— Ես հարցնում եմ՝ ո՞վ էր, — ավելի բարձր կրկնեց մարդը։

Չգիտեմ, — հազիվ արտասանեց Աշոտը։

Երրորդ հարկից երևաց մորաքույր Հռիփսիմեի գլուխը։

— Լևոնն էր, — հանգիստ խոսեց նա, — միայն նրանից կարելի է նման բան սպասել։

Լևո՞նն էր, — տղամարդը նայեց Աշոտին։

Աշոտի կոկորդը չորացել էր։ Նա զգաց, որ հարկավոր է ասել, թե Լևոնը չէր, բայց չկարողացավ։ Նա միայն ցանկանում էր շուտ չքվել այդտեղից, ամեն տեսակ հարցուփորձից ազատվել։ Նա նախատում էր իրեն, որ համաձայնել էր ֆուտբոլ խաղալ։

Կոտրված ապակու տերը բակ դուրս եկավ։ Աշոտը հիշեց, որ իր պարտականությունն է վերցնել գնդակն ու փախչել։ Այդպես կանեին մյուսները, այդպես կաներ Լևոնը, անգամ փոքրիկ Պետիկը։ Սակայն միայն այդ մտքից Աշոտի սիրտը կծկվեց. ով գիտե, ինչ կլիներ դրանից հետո։

Սրտի ցավով նա թույլ տվեց, որ մարդը վերցնի գնդակը։ Գնդակը մարդուն հարկավոր չէր, բայց նա վերցրեց ու դեռ տարավ.

digitised by A.R.A.R.@

Այլևս չէր տանա։

Աշոտը ինքն էլ չիմացավ, թե ինչու նորից կրկնեց.

— Ես չէի։

Նա շատ էր ուզում, որ մարդը հավատար իրեն։ Իսկ մարդը երևի հավատաց, որովհետև մի քանի քայլ անելուց հետո ետ դարձավ ու ասաց.

— Լսի՛ր, տղա։ Ո՞րն է այդ Լևոնենց տունը։

Դա արդեն անթույլատրելի բան էր։ Աշոտը զարմացավ, թե ինչպես այդ մարդը, չնայած իր տարիքին, չի հասկանում, որ ինքը իրավունք չունի Լևոնենց տունը ցույց տալու։

Մարդը մի քանի քայլ էլ մոտեցավ։

— Լավ մտածիր, — ասաց նա, — գուցե կհիշե՞ս։ Չէ՞ որ դու չես կարող մոռանալ քո ընկերոջ տունը։

— Չեմ հիշում, — վերջապես ասաց Աշոտը։

— Միասին գնանք, — առաջարկեց մարդը, — դու խելոք տղա ես երևում ու կհասկանաս, որ այդ հարկավոր է։ Ես միայն նրա ծնողներին կզրուցեմ։ Դու դրանով միայն լավություն արած կլինես ընկերոջդ։

Աշոտը նայեց մարդու աչքերին։ Նա ուզեց համոզվել, որ մարդը ճշմարտությունն է ասում։ Իսկ մարդու աչքերի մեջ իսկապես ինչ-որ լավ բան կար, որ Աշոտը չկարողացավ հակաճառել։

— Դե գնա՛նք, — խոսեց մարդը, — նրա ձայնը արդեն բոլորովին էլ բարկացկոտ չէր, — դու լավ տղա ես երևում։

Աշոտը տատանվեց։ Նա զգաց, որ քիչ հետո այլևս չի կարողանա նահանջել։ Բայց Աշոտին օգնության հասավ մորաքույր Հռիփսիմեն։

— Վերջին հարկի բնակարանն է, — վրա տվեց նա, — բոլորն էլ գիտեն այդ անպետքի տունը։ Ոչ մի բողոք չի ազդում նրա վրա։

Աշոտն այլևս չսպասեց, դուրս եկավ բակից և հայտնվեց փողոցում։ Այգու մոտ նա հանդիպեց Լևոնին ու Պետիկին։

— Քեզ բռնե՞լ էին, — հարցրեց Լևոնը։

— Ոչ, — Աշոտը գլուխը թափ տվեց։

— Իսկ ես կարծում էի բռնել են։ Դու երևի ուզեցիր գնդակը փախցնել։ Ես բոլորովին մոռացել էի գնդակի մասին։

— Գնդակը վերցրին, — ասաց Աշոտը։

— Չկարողացա՞ր փախցնել։

— Ոչ, չկարողացա։

Պետիկը հիացմունքով Աշոտին նայեց։ Նույնիսկ Լևոնը վախեցել էր, իսկ Աշոտը՝ ոչ։ Նա մնացել էր գնդակը փախցնելու։ Հետո ինչ, որ չէր կարողացել։ Նա հաճույքով ձեռքերը կարճ շալվարի գրպանները խոթեց։ Բայց այստեղ Պետիկը վախեցավ։ Նա մի քանի անգամ շուռումուռ տվեց գրպանները, բայց երկու ծռված մեխերից և մի ժանգոտած պտուտակից բացի, ոչինչ չգտավ։ Անհավատալի բան էր, բայց տասկոպեկանոցը չկար ու չկար։ Անսահման վշտից նա արմունկով վեր քաշեց քիթը։

— Ի՞նչ եղավ քեզ, — հարցրեց Լևոնը։

— Չկա, — Պետիկը ավելի ուժեղ վեր քաշեց քիթը, — տասը կոպեկս։

— Կորցրե՞լ ես։

Պետիկը գլխով արեց։

— Ա՜յ քեզ բան, — ասաց Լևոնը, — մարդ էլ տասը կոպեկը կկորցնի՞։

— Կոպեկը այստեղ էր, — Պետիկը ցույց տվեց ամուր սեղմված փոքրիկ բռունցքը, — այստեղ էի պահել։

— Հիմար ես դու, — ծիծաղեց Լևոնը, — ո՞վ է տեսել, որ դրամը ձեռքում պահեն։ Կորցրել ես, փնտրիր, մենք ժամանակ չունենք։

Եթե Պետիկը մի քանի տարով մեծ լիներ ու դպրոց գնար, կմտածեր, որ Լևոնը անսիրտ ու անընկերասեր տղա է։ Բայց հիմա նա միայն ավելի տխրեց և ոչինչ չգտավ ասելու։

— Գուցե մե՞նք էլ փնտրենք, — ասաց Աշոտը, երևի, խղճալով Պետիկին։

— Ես չեմ փնտրի, — անտարբեր պատասխանեց Լևոնը, — թող չկորցներ։

Աշոտը անվճռական կանգնել էր տեղում։ Նա ձեռքը գրպանը տարավ, նորից հանեց։ Հետո ակամա միացավ Պետիկին, ու նրանք, գլուխները կախ, մայթի վրա ետ ու առաջ էին անում։ Բայց Աշոտը ոչինչ չէր տեսնում. նրա սիրտը խփում էր արագ ու անհանգիստ։ Եվ եթե այդ պահին նրա աչքերի մոտ ոչ թե տասկոպեկանոց, այլ մի ամբողջ մետաղյա ռուբլիանոց ընկած լիներ, դարձյալ չէր նկատի։

Լևոնը հենվեց ծառին։

— Միևնույն է, չեք գտնի, — ասաց նա ձանձրացած, — այստեղ ոչինչ էլ չկա։

Աշոտը միանգամից ուղղվեց։ Ինչ-որ բան դեմ





ՊԵՏԱԿԱՆ ԳՐԱԴԱՐԱՆ Гос. Библиотека
9-66
digitised by A.R.A.R.@



առավ կոկորդին, ու նա հազիվ հարցրեց.

— Ինչո՞ւ:

— Ի՞նչ իմանամ: Որևէ մեկը արդեն վերցրած կլինի:

— Ո՞վ,— նորից հարցրեց Աշոտը, և նրա սիրտը այս անգամ այնքան ուժգին տրոփեց, որ շունչը կտրվում էր,— դու գիտե՞ս, թե ով է վերցրել:

— Ոչ: Բայց մեկնումեկը վերցրած կլինի: Այդ ո՞վ է ընկած դրամը տեսնում ու չի վերցնում: Այ, եթե դու լինեիր, կվերցնեի՞ր:

— Ե՞ս,— կմկմաց Աշոտը,— ասենք թե կվերցնեի, հետո ի՞նչ:

— Տեսնո՞ւմ ես: Ինչ-որ մեկն էլ Պետիկի տասը կոպեկն է վերցրել:

— Ուրեմն դու չգիտե՞ս, թե ով է վերցրել,— հաստատ համոզվելու համար նորից հարցրեց Աշոտը:

— Իհարկե, չգիտեմ:

Աշոտը թեթևացած շունչ քաշեց:

— Ես պետք է պաղպաղակ գնեի,— ասաց Պետիկը:

— Մի ուրիշ անգամ կգնես:

— Ես հիմա եմ ուզում,— Պետիկի աչքերը լցվեցին: Նա հիշեց իր փայլուն ու նոր տասկոպեկանոցը:

— Մի՛ զռռա,— դժգոհեց Լևոնը,— ոչ ոք տրամադրություն չունի քեզ լսելու:

Պետիկը հեծկլտաց ու նայեց Աշոտին: Միայն նա կարող էր իրեն պաշտպանել Լևոնից: Չէ՞ որ Աշոտը չէր վախեցել և մնացել էր գնդակը փախցնելու: Աշոտը լավ տղա էր, համարձակ ու բարի: Բայց նա, չգիտես ինչու, լռում էր:

Լևոնը քայլեց: Աշոտը գնաց նրա կողքով: Պետիկը ստիպված հետևեց նրանց: Նա գնում էր ու հեծկլտում և քսքսացնում էր կոշիկները:

— Մարդավարի քայլիր,— առանց ետ նայելու՝ ասաց Լևոնը:

Պետիկը ավելի բարձր հեծկլտաց: Նա սպասում էր, որ հիմա, ուր որ է, Աշոտը մի լավ կհասցնի այդ Լևոնին:

Նրանք մի քիչ էլ գնացին: Լևոնը անսպասելիորեն շրջվեց Պետիկի կողմն ու հարցրեց.

— Լսիր, Պետիկ, դու շա՞տ ես ուզում պաղպաղակ ուտել:

Պետիկը գլխով արեց: Լևոնը դեռևս տատանվում էր:

— Ես կարող եմ քեզ տասը կոպեկ տալ,— ասաց նա,— դու փոխանակելու որևէ բան ունե՞ս:

— Ունեմ,— Պետիկը գրպանից հանեց ժանգոտած պտուտակը:

— Հիմար հո չե՞ս: Ուրիշ ի՞նչ ունես:

Պետիկը հանեց ծռված մեխերը:

— Ուրիշ ոչինչ չունե՞ս:

— Չունեմ: Ուզո՞ւմ ես, պտուտակն էլ կտամ, մեխերն էլ:

— Հիմար հո չե՞ս,— կրկնեց Լևոնը: Նա չէր հասկանում, թե ուրիշ ինչ կարելի է ասել,— իսկ եթե ես քեզ տասը կոպեկ տամ, դու պաղպաղակը մենա՞կ կուտես:

— Այո,— ասաց Պետիկը,— մենակ կուտեմ:

— Ինչ ագահն ես դու,— անկեղծորեն զարմացավ Լևոնը: Հետո միանգամից վճռեց ու թափ տվեց ձեռքը: — Գնանք սրճարանի մոտ,— նա նայեց Աշոտին,— ես քսան կոպեկ ունեմ: Մի պաղպաղակ էլ մեզ համար կվերցնենք ու կկիսենք:

Սրճարանը հեռու չէր: Այն գտնվում էր մեծ փողոցի վրա, որտեղ օրվա բոլոր ժամերին շատ մարդիկ էին լինում: Սրճարանում պաղպաղակ էին վաճառում, բայց այնտեղ պաղպաղակը ուտում



2814-Ա.Բ.

digitised by A.R.A.R.@

էին սեղանի առաջ նստած, իսկ դրանում ոչ մի հաճելի բան չկա: Սրճարան գնացողները չէին հասկանում, որ պաղպաղակ կարելի է գնել դրսում գտնվող կրպակից և ուտել ծառի տակ կանգնած:

Կրպակի մոտ նրանք կանգնեցին:

— Պետիկ,— ասաց Լևոնը,— գուցե դու այնուամենայնիվ պաղպաղակը կկիսե՞ս: Մյուս տասը կոպեկը ինձ շատ է հարկավոր:

— Ես ամբողջն եմ ուզում,— ասաց Պետիկը:

Աշոտը ինչ-որ բան էր ուզում ասել, բայց վճռականությունը չբավականացրեց: Լևոնը դարձյալ թափ տվեց ձեռքը: Նա այլևս չէր տատանվում: Գնեց երկու պաղպաղակ, մեկը տվեց Պետիկին, իսկ մյուսը կիսեց Աշոտի հետ: Ծառի տակ նրանք սկսեցին ուտել:

Սրճարանի ցուցափեղկում գունավոր ստվարաթղթից պատրաստված էին պաղպաղակ ուտող մի տղա ու մի աղջիկ: Տղայի առաջ գրեթե մի ամբողջ դույլ պաղպաղակ էր դրված, իսկ գդալը շերեփի չափ էր: Նա կարծես ծիծաղում էր իր առաջ նստած աղջկա վրա, որ ուտում էր փոքրիկ գդալով, փոքրիկ մի ամանից: Աղջիկը այնքան լավն էր, որ Լևոնը ուտում էր՝ աչքը չկտրելով նրանից: Թվում էր, աղջիկը, ուր որ է, փոքրիկ գդալը բերանն է տանելու: Նա ինչ-որ բանով հիշեցնում էր իրենց դասարանցի Լուսիկին, որին մի ամիս առաջ նստեցրել էին հենց իր՝ Լևոնի կողքին: Բայց հետո Լուսիկի մայրը բողոքել էր, որ իր աղջիկը Լևոնից ոչ մի լավ բան չի սովորի: Դրանից հետո Աշոտին էին նստեցրել Լևոնի կողքին: Լևոնը գիտեր, որ երբ Աշոտի մայրը իմանա, նույնպես կբողոքի և Աշոտին կտանեն իր կողքից: Իսկ աղջիկը շատ էր նման Լուսիկին: Լևոնը ամբողջ սրտով ցանկացավ, որ գոնե մի անգամ Լուսիկը ասեր, որ պաղպաղակ է ուզում ուտել: Լևոնը համոզված էր, որ աշխարհի բոլոր պաղպաղակները կտաներ նրան, բոլորը Լուսիկին կտար, ինքը ոչ մի համ չէր ուտի:

Լևոնը վերջացրեց իր բաժինը: Նա ափսոսաց, որ ցուցափեղկի աղջիկը թեև նման էր Լուսիկին, բայց ստվարաթղթից էր պատրաստված:

Աշոտը նույնպես վերջացրել էր: Նա տխուր էր և կերել էր առանց զգալու պաղպաղակի համը:

Պետիկը իր բաժինը ուտում էր հաճույքով. նա ավելի շատ լիզում էր, քան թե ուտում: Պաղպաղակը հալվել էր ու կաթում էր Պետիկի մատներին: Երբ Պետիկին, թղթից բացի, էլ լիզելու բան չմնաց, նա լիզեց մատները և ափսոսանքով նայեց տղայի հսկայական գդալից կախված մեծ գունդ պաղպաղակին, որը, ուր որ է, ցած էր ընկնելու:

— Նա կարո՞ղ է ամբողջը ուտել,— հարցրեց Պետիկը:

— Չգիտեմ,— ասաց Լևոնը,— գնացինք:

Շոգ էր: Բոլոր փողոցներում էլ արևը այրում էր: Արցունքները չորացել էին Պետիկի դեմքին: Նա արդեն ժպտում էր և քայլելիս բռնեց Աշոտի ձեռքը:

Լևոնը չհամարձակվեց բակ մտնել և ուղիղ տուն գնաց: Մայրը հագնված էր, և Լևոնը հիշեց, որ նա հերթափոխի է գնում ու իր պատճառով կարող էր ուշանալ:

— Դու մոռացե՞լ ես հաց գնել,— հարցրեց մայրը:

— Ոչ,— ասաց Լևոնը,— հիշում էի, բայց չկարողացա: Դրամը խաղալիս ընկել էր գրպանիցս,— ասաց նա, որովհետև ուրիշ պատասխան չէր կարող տալ:

Մայրը հոգոց հանեց:

— Նորից բողոքում են քեզանից: Ե՞րբ ես դու ուղղվելու:

— Մա,— ասաց Լևոնը,— ես ճաշը առանց հացի կուտեմ: Ի՞նչ կլինի որ:

Մայրը չպատասխանեց: Նա վերցրեց պայուսակն ու գնաց: Լևոնը լսեց, թե ինչպես չրխկաց դրսի դռան փականքը: Այդ ժամանակ նա խոհանոց գնաց: Խոհանոցում նա բացեց ջրի ծորակը: Ջուրը սառն ու հաճելի շիթով խփեց նրա ափերին:

Հենց այդ նույն պահին Աշոտը կանգնել էր իրենց դռան առաջ: Բռի մեջ նա ամուր սեղմում էր մի փայլուն ու նոր տասկոպեկանոց և չգիտեր՝ ինչպես վարվեր հետը: Կոպեկանոցը այրում էր վաղուց բռնած ափը: Նա կարող էր դրամը դեն նետել, բայց դրանով սիրտը չէր թեթևանա: Հարկավոր էր մի ուրիշ բան անել, որը դեռ հնարավոր էր: Ու թեև Աշոտը հասկանում էր, որ կատարվել է մի վատ, շատ վատ բան, և որը դեռ կարելի է ուղղել, բայց միաժամանակ զգում էր, որ դրա համար ինքն այդքան համարձակություն չունի:

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@

50 ՏԱՐԻ







*Մարտի 27-ին լրանում է մեծ Լենինի հավատարիմ աշակերտ ու մարտական զինակից, կոմունիստական կուսակցության և սովետական պետության ականավոր գործիչ Սերգեյ Միրոնովիչ Կիրովի ծննդյան 80 տարին:*

*Տպագրում ենք մի հատված Ա. Գոլուբևայի «Ուրժումցի տղան» գրքից:*

# ԱՌԱՋԻՆ ՀԱՆՁՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ

Սերգեյն ու Սանյան սկսեցին հաճախակի անցնել աքսորականների մոտ:

Մի անգամ նրանք առանձնապես երկար նստեցին «սարատակի տնակում», թեյ խմեցին, զրուցեցին, ջութակի նվագ լսեցին:

Այդ երեկո Սերգեյն առաջին անգամ աքսորականների մոտ ինչ-որ տարօրինակ մի թերթիկ տեսավ, վրան մուգ-կապույտ տառեր տպագրված: Թուղթը վատն էր, դեղին գույնի, իսկ կապույտ տառերը՝ ոչ այնքան համաչափ: Սերգեյն հետաքրքրվեց այդ թերթիկով ու անմիջապես էլ հարցրեց Սպրուդեին, թե ինչու թերթիկն այդպես անսովոր կերպով է տպագրված:

— Ձեռքով է տպագրված, — պատասխանեց Սպրուդեն և բացատրեց Սերգեյին, որ դա հեղափոխական, ա՛նլեգալ թերթիկ է և տպագրվել է հեկտոգրաֆով: Իսկ մի շաբաթ հետո Սերգեյն ու Սանյան անսպասելի կերպով Սպրուդեից լուրջ ու կարևոր հանձնարարություն ստացան՝ փորձել թռուցիկներ տպագրել:

— Կփորձենք, — միաձայն պատասխանեցին Սերգեյն ու Սանյան:

— Դուք ստիպված կլինեք ինքներդ պատրաստել հեկտոգրաֆը: Գնեցեք գլիցերին ու սոսինձ, ինչքան կարելի է շատ: Եվ որպեսզի կասկած չհարուցեք, հերթով գնացեք դեղատուն: Այսօր՝ մեկդ, վաղը՝ մյուսդ: Հիշեցեք, որ այդ գործում մեծ զգուշություն է հարկավոր, — ասաց Սպրուդեն հրաժեշտի ժամանակ:

— Զգույշ կլինենք, — պատասխանեց Սերգեյը:

Հետևյալ առավոտյան հենց որ Սերգեյն արթնացավ, անմիջապես պատրաստվեց դեղատուն գնալու, գլիցերին գնելու համար:

— Սկզբում ես կգնամ, հետո՝ դու, — ասաց նա Սանյային:

Նրանք պայմանավորվեցին հանդիպել Վոսկրեսենսկայա եկեղեցու մոտ:

Ուրժումում միայն մի դեղատուն կար՝ զեմստվոյականը, որ գտնվում էր Վոսկրեսենսկայա փողոցի վրա: Այդ դեղատան կողքով, մանուկ ժամանակ



Սերգեյը կիրակի օրերին որբանոցից իրենց տուն էր վազում:

Իսկ ավելի առաջ, երբ դեռ որբանոցում չէր, նա



digitised by A.R.A.R.@

հաճախ Սանյայի հետ գալիս էր այդտեղ, դիտելու լուսամուտում ցուցադրված կապույտ ու կարմիր ապակե գնդիկները: Երբ մայրը հիվանդացավ, տատիկը դեղի համար գալիս էր այդ դեղատունը, երբեմն հետը տանելով թոռնիկին: Այդտեղ նա տեսել էր խոշոր, հախճապակե սրվակներ՝ սև մակագրություններով:

Բարձր վաճառասեղանի հետևից նայում էր սպիտակ խալաթով մի հաստ մարդ: Նա էր դեղորայքի համար դրամ տանում: Նրա առջև, վաճառասեղանի վրա շարքով շարված էին դեղասրվակները՝ պոչերի նման երկար դեղատոմսերով: Դեղատոմսերը դեղին և սպիտակ գույն ունեին:

Տատիկն ասում էր, թե այն դեղերը, որ սպիտակ պոչ ունեն, կարելի է խմել, իսկ դեղին պոչավորները չի կարելի, դրանք կարելի է միայն մարմնին քսել: Տարբեր գույնի դեղատոմսերը սարքել էին դիտմամբ, անգրագետների համար, որպեսզի նրանք դեղերը չշփոթեն: Դեղորայքը գնորդին հանձնելուց առաջ դեղագործը սրվակը զարդարում էր, ասես տիկնիկ լիներ: Նա սրվակին փակցնում էր թղթե պոչը, իսկ խցանին հագցնում էր գունավոր ծալազարդ թղթե գլխարկ, որ նման էր չեպչիկի:

Սերգեյը վաղուց չէր եղել զեմստվոյական դեղատանը: Իսկ այժմ նա գնում էր այնտեղ գաղտնի տպարանի համար գլիցերին գնելու:

Այդ առավոտ դեղատունը դատարկ էր: Սերգեյը նայեց դեղորայքի թարեքներին, լուսամուտի գոգին դրված ապակե գնդիկներին և լատիներեն մակագրություն ունեցող սպիտակ հախճապակե սրվակներին: Ոչինչ չէր փոխվել: Ամեն ինչ այդտեղ նույնն էր, ինչպես իր վաղ մանկության օրերին:

Ահա սպիտակ դռնից ներս մտավ նույն այն դեղագործը՝ գերմանացի Կելլերը: Նա դեռ առանց խալաթի էր, երևի հենց նոր էր անկողնուց վեր կացել:

Դեղագործը ոսկե շրջանակով ակնոցի միջից խիստ նայեց գնորդին և բառերը հատ-հատ արտասանելով, հարցրեց.

— Ձեզ ի՞նչ է հարկավոր: Քանի՞ կոպեկի:

Դրանք այն միակ բառերն էին, որ նա ճիշտ էր արտասանում: Ահա արդեն տասներկու տարի էր, ինչ նա օրական տասնյակ անգամներ այդ միևնույն հարցն էր տալիս:

—Տասնհինգ կոպեկի գլիցերին,—պատասխանեց Սերգեյը:

Կելլերը թարեքից իջեցրեց դեղին թղթի ծալազարդ թասակ ունեցող փոքրիկ սրվակը: Սերգեյը փողը վճարեց, սրվակը գրպանը խոթեց ու դուրս եկավ դեղատնից:

Փողոցի անկյունում, եկեղեցու մոտ նրան արդեն սպասում էր Սանյան: Նրանք իրար աչքով արին, ու Սանյան, մի քանի րոպե սպասելով, նույնպես ուղևորվեց դեպի դեղատուն:

— Ձեզ ի՞նչ է հարկավոր: Քանի՞ կոպեկի,— հարցրեց նրան դեղագործը:

— Տասնհինգ կոպեկի գլիցերին:

Այսպես Սերգեյն ու Սանյան սկսեցին ամեն օր գլիցերին գնել:

Մի շաբաթից հետո ամբարի անկյունում՝ խոտակույտի և հնացած թաղիքների տակ, արդեն պատկառելի քանակությամբ սրվակներ էին թաքցված: Բայց Սերգեյին շարունակ թվում էր, թե գլիցերինը քիչ կլինի: Նա Սանյային առաջարկեց երեկոներն էլ գնալ դեղատուն, երբ Կելլերին փոխարինում էր նրա օգնականը՝ մի փոքրիկ, ճաղատ մարդուկ, որի մասին քաղաքում ասում էին, թե նա կոնծելուն դեմ չի, ոստիկանների հետ բարեկամություն է անում և շատ էլ սուտ է խոսում:

Դեղագործի օգնականը երբեք չէր բաժանվում իր սպիտակ խալաթից: Նույնիսկ շուկա՝ գազար գնելու համար էլ, նա խալաթով էր գնում, որպեսզի բոլորը նրան բժշկի կամ գիտնական մարդ տեղ դնեին:

Հենց առաջին երեկոյան, երբ Սերգեյը ներկայացավ դեղատուն և տասնհինգ կոպեկի գլիցերին խնդրեց, դեղագործի օգնականը, քմծիծաղ տալով, աչքով արեց.

— Ձեր ինչի՞ն է պետք գլիցերինչիկը, երիտասարդ:



Դեմքը փափկացնելու համա՞ր արդյոք: Ուզում եք օրիորդների՞ն դուր գալ:

— Ոչ, ես գլիցերինը խմում եմ ձայնս քնքշացնելու համար,—առանց շփոթվելու պատասխանեց Սերգեյը:

Դեղագործի օգնականը պահարանից հանեց գլիցերինի սրվակը և անխոս մեկնեց Սերգեյին:

## «ԻՍԿՐԱ»-Ն ՈՒՐԺՈՒՄԿԱՅԻ ՎՐԱ

Սերգեյն ուզում էր, որքան հնարավոր է, շուտ գործի անցնել: Որպեսզի ոչինչ չշփոթեր, նա ծանոթ գրադարանապետուհուց հանրագիտական բառարան ձեռք բերեց:

Ի մեծ ուրախություն նրա, բառարանում մի ամբողջ հոդված կար հեկտոգրաֆը սարքավորելու և նրանով տպագրելու մասին: Հոդվածում ասված էր, որ առաջին և հիմնական բանը, որ պահանջվում է հեկտոգրաֆի համար, դա վեր բարձրացրած եզրերով թիթեղաթերթն է: Այդ թերթի վրա լցնում են սոսնձի և գլիցերինի եռացրած խառնուրդը:



digitised by A.R.A.R.@

Երբ խառնուրդը սառչում է, վերցնում են մի թերթ թուղթ և վրան հատուկ կապույտ թանաքով գրում են այն տեքստը, որից հարկավոր է արտատիպ հանել: Այնուհետև գրված թուղթը փռում են սառած խառնուրդի վրա: Թղթի վրայի բոլոր տառերը փոխանցվում են գլիցերինի և սոսնձի խառնուրդից բաղկացած վերնաշերտին: Այդ վերնաշերտի վրա փռելով մաքուր թղթի թերթը, կստանանք արտատիպ տեքստը:

Սերգեյն ու Սանյան որոշեցին թիթեղաթերթը պատվիրել դարբնին: Տատիկի մոտ կարկանդակներ թխելու համար այդպիսի թերթեր կային, բայց Սերգեյը գտնում էր, որ հեկտոգրաֆի համար դրանցից մեկը վերցնելը վտանգավոր բան է:

Իսկ եթե հակառակի պես տատիկը հանկարծ



Նկ. ԱԼԲԵՐՏ ՑԱՐԱԼՅԱՆԻ

գլխի ընկնի, որ թիթեղաթերթը տեղում չէ: Ո՞վ է վերցրել, ինչու՞ են վերցրել, ի՞նչ նպատակով: Ու հարևանների միջև խոսակցություն սկսվի, իսկ դա կարող է գործին վնասել: Ճիշտն ասած, այդ թիթեղաթերթն էլ մի բանի պետք չէ, փոքր է: Ավելի լավ է պատվիրել:

Թիթեղ գնելու համար աքսորականներից փող ստանալով, ընկերները երեկոյան գնացին դարբնի մոտ: Երբ նրանք դարպասից դուրս եկան, հարևան տներում արդեն լույսերը վառվել էին:

—Գիշերաշրջիկներ, էլի մինչև լուսաբաց թափառելու՞ եք գնում,—մրթմրթաց Մալանյա տատիկը: Նա դեռ շարունակում էր Սերգեյին ու Սանյային երեխաներ համարել:

Բայց բարեկամները նրա մրթմրթոցին պատասխանեցին միայն քմծիծաղով և արագ քայլեցին փողոցով:

Դարբնոցը քաղաքից դուրս էր գտնվում՝ փոստուղու մոտ, դաշտի մեջ: Կողքին մի քանի թփեր կային ցցված, որոնց կրծոտել ու ջարդոտել էին ձիերը: Հեռվից դարբնոցը ոչ այն է սև բլրակի էր նման, ոչ այն է՝ քարածխի կիտվածքի: Միայն ցածրիկ ծխնելույզից դուրս թռչող կայծերից էր հասկացվում, որ դա դարբնոց է:

Սերգեյն ու Սանյան մոտեցան դռանը: Դարբնոցում կիսամութ էր, միայն քուրայում դեռ կայծկլտում էին վերջին կարմրավուն ածուխները: Ծեմքին նստել էր մորուքավոր դարբինն ու ծխում էր: Սերգեյը նստեց ծերունու կողքին և մի քիչ զրուցեց նրա հետ, ապա միջին մեծության, բարձրացրած եզրերով թիթեղաթերթի պատվեր տվեց:

— Ձեր ուզածը թավա է ու ոչ թե թիթեղաթերթ, — ուղղեց նրան դարբինը: — Ի՞նչ կա որ, կարելի է: Հինգ օրից հետո պատրաստ կլինի:

— Իսկ ավելի շուտ հնարավոր չէ՞:

— Հնարավոր չէ, —ասաց ծերունին ու մտավ դարբնոց:

Դրանով էլ զրույցը վերջացավ:

Մինչև դարբինը թավան կպատրաստեր, Սերգեյն ու Սանյան ժամանակն իզուր չէին կորցնում: Նրանք սոսնձի պաշար կուտակեցին, կապույտ թանաք ճարեցին հեկտոգրաֆի համար, և ընտրեցին իրենց ապագա տպարանի տեղը, դա բակում գտնվող հին բաղնիքն էր:

Ամեն ինչ պատրաստ էր, իսկ թավային պիտի սպասեին դարձյալ երեք օր: Ընկերները որոշեցին առայժմ միայն տնտեսական գործերով զբաղվել: Ցախատան մոտ, երեսի վրա շրջված ընկած էր մի հին, չորացած մակույկ:

Սերգեյն ու Սանյան փակեցին նրա հատակի ծակերը, կողերը ձյութեցին և նավթով թրջեցին ժանգոտած թիաօղերը: Մնում էր միայն մակույկը ներկել և անուն գտնել նրա համար: Մի ժամանակ այդ մակույկը կոչվելիս էր եղել «Անմոռուկ», բայց առաջին չորս տառն արդեն ջնջվել էին և մակույկակողին երևում էր միայն «ռուկ» մակագրությունը:

Սերգեյը ներկով ծածկեց այդ մակագրությունը, ինչպես նաև ամբողջ մակույկը ներկեց երկնագույն



digitised by A.R.A.R.@




## ԱՉԻԿԻ ՆՎԵՐԸ

*ՌՈՒԲԵՆ ՂԱՐԻԲՅԱՆ*

Հենց որ օրը լուսացավ,
Փոքրիկ Աչիկն արթնացավ,
Արագ-արագ հագնվեց,
Տատ ու պապին ձայն տվեց.
  — Վե՛ր կացեք, վե՛ր,
Շու՛տ, շու՛տ, շու՛տ,
Մարտի ութ է,
Մարտի ութ,
Իսկ դուք տոնը մոռացել,
Քնել, քնով եք անցել։
Վե՛ր կացեք, վե՛ր, մի՛ քնեք,
Շո՛ւտ գնացե՛ք բան գնեք,
Որ մայրիկը
Գործից գա,
Տեսնի՝ իրեն
Նվեր կա։
  — Ձենք մոռացել, ինչպե՛ս թե...
Մեր նվերը՝ պատրաստ է,
Իսկ դո՛ւ, ա՛յ իմ թուխամազ,
Ասա՝ դու՞ ինչ պետք է տաս...
  — Ինչ պետք է տա՞մ...
Ճիկ, չիկ, չիկ,
Ես էլ կտամ՝
Մի պաչիկ։
  — Շաքար բերան, նուշ բերան,
Շաքարից անուշ բերան,
Տատին տանի քո չարը։
Քո պաչը մի աշխարհ է,
Ամեն բանից
Վեր է, վե՛ր,
Էլ դրանից
Լավ նվե՞ր...

## ՄՈՐՍ

*ՄԵՐՈՒԺԱՆ ՀԱԿՈԲՅԱՆ*

Ծաղկել է սրտիս ամեն, ամեն լար,
Շուրջս գարուն է, քնքշանք է ու սեր,
Սառույց է տանում գետակը վարար։
Գարուն եմ բերել, մայրիկ, քեզ նվեր։

Գարուն եմ բերել ու մի ձնծաղիկ,
Որ նոր է բուսել մայր հողի գրկում։
Ա՛ռ այս նվերը, իմ անուշ մայրիկ,
Ու թող նոր գարուն բացվի քո հոգում։

---

յուղաներկով և ջանասիրաբար ու հատ-հատ, ինչպես գծագրի վրա, գրեց.

«ԻՍԿՐԱ»

Տառերը սև էին՝ կարմիր եզրագծերով։

Երբ մակույկն արդեն պատրաստ էր, Սերգեյը ցախատնից դուրս քաշեց ձեռնասահնակը, մակույկը դրեց վրան և Սանյայի հետ երկուսով քարշ տվեցին Ուրժումկայի ափը։ Սերգեյը պարանով քաշում էր սահնակը, իսկ Սանյան հրում էր հետևից։

Գետափին նրանք հանդիպեցին ոստիկանական վերակացու Կուրշակովին, որին ճղճղան ձայնի ու կարճ բոյի համար քաղաքում Աքլոր էին անվանում։

Աքլորը նոր միայն լողացել էր ու սարն էր բարձրանում, կայտառացած ու թարմացած, մունդիրի ճարմանդները կոճկելով ու թաց, ճաղատացող գլուխը սրբելով։

Երբ ձեռնասահնակը հավասարվեց նրան, Աքլորը կանգ առավ ու աչքերը կկոցեց։

— «Իսկրա»,— կարդաց նա։ — Հիանալի անուն եք մտածել, երիտասարդներ։ «Իսկրա»։ Դուք ավելի լավ կլիներ, այն կոչեիք «Փոթորիկ» կամ «Արշալույս», «Գեղեցկուհի»։

— Մեզ «Իսկրան» ավելի է դուր գալիս,— ասաց Սերգեյն ու ձեռնասահնակը քաշեց դեպի գետը։



digitised by A.R.A.R.@



ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

# ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ՍՏՎԵՐՆԵՐ

ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐԵՔԵՐՈՐԴ

## ՌՈՒԲԵՆՆ ԱՆՀԵՏԱՆՈՒՄ Է

Հաջորդ առավոտն սկսվեց ավելի վատ անակընկալներով: Մեր տուն եկավ Վարդուշը ու, երբ մայրիկս դուռը բացեց, նա բարևը մոռացած դիմեց ինձ.

— Դերենիկ, երեկոյան Ռուբենի հետ եղե՞լ ես:

Սիրտս ահ ընկավ:

— Ի՞նչ է պատահել,— փախեցած հարցրեց մայրս:

— Ռուբենը գիշերը տուն չի եկել:

Ես մի կերպ բացատրեցի, որ նախորդ օրը Ռուբենին տեսել եմ առավոտյան:

— Հետո՞:

— Հետո նա գնաց Յոլակենց տուն:

— Յոլակենց տանը եղել է,— ասաց Վարդուշը,— երեկոյան դուրս է եկել:

Թաղն իրար անցավ: Իսկույն տեղեկացրին միլիցիային: Ամբողջ օրը որոնում էին Ռուբենին: Մենք, իհարկե, դասի չգնացինք: Ես ու Կարոն առանձնացանք աղբյուրի ծառուղում:

— Սկսվեց,— ասաց Կարոն:

— Նա Ռուբոյին կսպանի:

— Չի սպանի: Ռուբոն նրանց հարկավոր է Վարդուշին ստիպելու համար:

— Չգնա՞նք միլիցիա:

Ուրեմն, ասում ես, գնանք, ուրեմն որոշեցինք:

Դուրս էր գալիս, որ ես որոշեցի, պարզապես Կարոն համաձայն է ինձ հետ: Բայց ես գիտեի, որ դա նշանակում է իշխանությունների ձեռքը հանձնել նաև Վարդուշին, որը թեև փոխել էր անունը և, ըստ երևույթին դավաճան էր, բայց մեր խեղճ բարեկամի հայրիկն էր, նրան խնամողը:

Սկիզբը՝ 1965 թ. №№ 8—12, 1966 թ. №№ 1, 2:

— Սպասիր,— ասացի ես,— իսկ դու ի՞նչ ես առաջարկում:

Կարոն երկար ժամանակ լուռ էր:

— Մի բան ասա,— բարկացա ես,— ուրիշ ժամանակ պարծենում ես:

— Եթե գնանք,— ասաց Կարոն,— ստիպված ամեն ինչ պիտի պատմենք: Այդ դեպքում Վարդուշին կձերբակալեն:

— Բա ի՞նչ անենք:

— Կարո՞ղ ես սոսինձ, լրագիր ու մկրատ ճարել:

— Հետո ի՞նչ:

— Դու այդ բոլորը գտիր, հետո կասեմ:

Ինձ համար դժվար չէր լրագիր ու սոսինձ գտնելը: Մի ժամ հետո մենք նորից աղբյուրի մոտ էինք: Ես տանից թռցրել էի նաև մորս մկրատը, իսկ Կարոյի ձեռքին մի տետրակ կար:

— Արի նախ նամակը կազմենք,— ասաց նա:

— Ի՞նչ նամակ:

Կարոն արհամարհական հայացք գցեց վրաս.

— Համա դմբո ես, հա՛:

— Մի՛ արլորանա,— սրտնեղեցի ես,— բացատրիր:

— Մենք պետք է միլիցիային հայտնենք, թե ով է գողացել Իմ դալուկ բարեկամին:

— Հետո՞:

— Կհայտնենք նամակով:

— Է, մեկ չի՞ որ:

— Իհարկե մեկ չի: Մենք նամակում միայն կգրենք, որ Իմ դալուկ բարեկամին գողացել է այդ էշերի կոշկակարը, թող փնտրեն գտնեն:

— Ճիշտ է,— ասացի ես,— բայց այդ դեպքում մեզ էլ կհարցաքննեն:

— Իսկ ո՞վ կիմանա, որ մենք ենք նամակի հեղինակը: Անունները չենք գրի և վերջ:

— Իսկ ձեռագի՞րը:

— Երևում է, ոչ մի արկածային գիրք չես կարդում:

Ես դարձյալ բան չհասկացա, բայց ավելի դմբո երևալու ցանկություն չունեի:

— Լավ,— ասացի,— նամակը գրենք:

Պարզվեց, որ Կարոն արդեն գրել էր: Զարմանալի խելոք գլուխ էր այդ Քաջ բազուկը: Նա բաց արեց տետրակն ու կարդաց.

digitised by A.R.A.R.@

«Երևանի կարմիր միլիցիայի ընկեր պետին:

Մեզ հայտնի է, որ մանկահասակ (այս բառը Կարոն կարդաց մի առանձին հպարտությամբ: Պարզ էր, ես այդ բառը չգիտեի) Ռուբեն Աստվածատրյանին գողացել է մորուքավոր գնչուն, այն, որ Ղանթարում պայթում է այգեպանների էշերին: Հայտնում ենք, որ նա ապրում է Ջանգվի ձորում, քարայրի մեջ:

Անտեսանելի ստվերներ»:

Ես, բերանս բաց, լսում էի: Երբ վերջացրեց, հպարտ-հպարտ նայեց ինձ.

— Հը, ո՞նց է, ավելացում չունե՞ս:

— Չունեմ,— խոստովանեցի ես,— ճիշտ էիր ասում, որ դու իսկական էն բանն ես, Շերլոկ Հոմս:

— Հոլմս,— ուղղեց Կարոն:

Տեղն ու տեղը նստեցինք ձյան վրա: Կարոն տետրակից մի թուղթ կտրեց ու բացեց սոսնձի շիշը:

— Հիմա որ տառն ասեմ, լրագրից կտրիր,— կարգադրեց նա,— առաջինը «Ե»: Մեծատառ. Օգնող ձեռք, մեծատառ: Ժամանակն է, որ դու իմանաս, որ քաղաքների անունները մեծատառով են գրում, իսկ Երևանը քաղաք է:

Բայց նա իզուր էր ինձ ձեռ առնում, ես ինքս էլ գյուտ արի: Ես ոչ թե «Ե» կտրեցի լրագրից, այլ մի ամբողջ «Երևան», հետո մի «ի» էլ կպցրինք պոչին, և ստացվեց նամակի առաջին բառը՝ «Երևանի»:

Շուտով գործն առաջ գնաց: Ես մեկ-մեկ կտրում էի հարկավոր տառերը, իսկ Կարոն սոսնձով կպցնում էր իրար կողքի, աստիճանաբար մեր տպագիր նամակը գլուխ էր գալիս:

Երբ Կարոն վերջին տառն էր կպցնում, մենք ցրտից կպել էինք գետնին, սառել, փայտացել էինք: Ես ատամ-ատամի էի տալիս, իսկ Կարոն սոսնձոտ ձեռքով կատաղի տրորում էր ականջները:

— Գնանք,— ասաց նա:

Վեր կացանք:

— Բայց մինչ այդ պետք է հետքերը կորցնել:

Նա գրպանից հանեց լուցկին, այրեց լրագրի մնացորդները, հետո ինձ ստիպեց դեն գցել սոսնձի շիշը (որ դեռ համարյա լիքն էր): Բայց ես ոչ մի կերպ չհամաձայնեցի մկրատի «հետքերը կորցնել», գիտեի, որ մայրս իմ օձիքն էր բռնելու, քանի որ ես հաճախ էի մկրատը թռցնում ճեղապարատիկի ռեզին կտրելու համար: Ես մկրատը գրպանս խոթեցի: Կարոն զգուշացրեց.

— Տես հա՜, ո՛չ ոք չպետք է իմանա, որ դա քեզ մոտ է եղել:

Կարոն նամակը դրեց ծրարի մեջ ու ծրարի եզրերի սոսինձը լիզելով կպցրեց: Թվում էր, թե ամեն ինչ լավ է գնում, եթե չհաշվենք, որ ոտքերս



Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

մրսում էին ու ես կատաղի ցատկոտում էի ամայի ծառուղու ձյուների վրա: Բայց ծրարի փակվելուց հետո, հանկարծ ուրիշ հարց ծագեց:

— Ո՞վ պիտի տանի նամակը,— հարցրի ես:

— Փոստը:

— Բա հասցե՞ն:

Այլևս ոչինչ անել չէինք կարող: Թաց բազուկը լրագրի հետքերը արդեն «կորցրել էր»:

— Փո՞ստը,— ծաղրեցի ես:

— Լավ, սխալվեցի,— խոստովանեց Կարոն.



digitised by A.R.A.R.@

*նամակը մենք կտանենք Թաքուն, այդ, նույնիսկ, ավելի հետաքրքիր կլինի։ Մութն ընկնելուն պես, տնից ծլկիր, ես քեզ կսպասեմ եկեղեցու բակում, տես, ոչ որ չտեսնի, լավ կլինի, որ երեսդ մի բանով փաթաթես։*

*Մթնեց։ Ես, դեմքս շարֆով փաթաթած, գդակս աչքերս քաշած, մտա եկեղեցու բակը։ Կարոն արդեն սպասում էր ինձ։ Ես նրան չէի ճանաչի։ Դեմքը ծածկված էր ստվարաթղթի դիմակով, ես, նույնիսկ վախեցա։ Բայց նա մոտեցավ ինձ ու խուլ շշնջաց.*

— *Արդարություն, ընկերություն, պատիվ։*

— *Արդարություն, ընկերություն, պատիվ, — շշնջացի ես։*

— *Գնանք։*

*Ցուրտը քշել էր մարդկանց, խավար փողոցներն ամայի էին։ Երբ հեռվում ստվեր էր երևում, մենք կպչում էինք պատերին, թիկունքով դեպի փողոցը։*

*Այդպես հասանք երկհարկանի տանը։ Բանը դժվարացավ։ Տան պատուհաններից առատ լույս էր հորդում, իսկ բակի դռնով երթևեկում էին անում միլիցիոներները։ Երկար սպասեցինք, մինչև փողոցը խաղաղվեց, երկհարկանի տան լույսերը մարեցին, մնաց միայն մի լուսավոր պատուհան երկրորդ հարկում, որտեղ, երևի, նստած էր հերթապահը։ Կարոն ցածր սուլեց, ու մենք աննկատ մտանք բակը։ Վախից ոտներս ծալվում էին, սոսկալի ցուրտ էր, բայց ես լարումից քրտնել էի։*

— *Բարձրացիր, — շշնջաց Կարոն ու մոտեցավ դեպի երկրորդ հարկի պատշգամբը տանող աստիճաններին։*

*Օ՜, այդ փայտե աստիճանները։ Դրանք անտանելի ճռճռում էին։ Ամեն ճռոցի հետ սիրտս ծուլծուլ էր լինում։ Ես հազիվ էի քարշ գալիս Կարոյի հետևից։*

*Երբ արդեն աստիճանների կեսը հաղթահարել էինք, հանկարծ պատշգամբում մի դուռ բացվեց, խավարում ինչ-որ բան զրնգաց ու ներսից մեկը ձայն տվեց.*

— *Դուռը ծածկիր, Գարսո, դուռը։*

— *Գալիս եմ, — ասաց պատշգամբի մարդը։*

*Հետո մեզ վրա գոլ ջուր թափվեց։ Մարդը հեռացավ պատշգամբի բազրիքից ու թիթեղե թեյամանը շխշխկացնելով կրկին ներս մտավ։*

— *Էլ չեմ կարող, վերադառնանք, — ասացի ես։*

— *Դու այստեղ մնա, — կարգադրեց Կարոն։*

*Ես մնացի աստիճանների վրա, նա սկսեց դանդաղ բարձրանալ։ Ահա հասավ վերևի հարթակին, ապա պտտվեց, բարձրանում է, ահա քայլում է պատշգամբով։ Ես շունչս պահած, հետևում էի ընկերոջս ոտնաձայնին ու մտածում, թե ինչ սիրտ ունի Կարոն։ Վերջապես նորից նկատեցի նրան, նա հասավ ինձ ու շշնջաց.*

— *Գնա՛նք։*

*Զգուշությամբ իջանք, հետո բակում թափ առանք ու մեկ էլ շունչներս հետ բերինք փողոցի ծայրին։*

— *Ո՞նց արիր, հարցրի ես։*

— *Դռան տակի ճեղքով ներս գցեցի, — ասաց նա։*

— *Կնկատե՞ն որ։*

— *Համենայն դեպս, առավոտյան կնկատեն։*

*Տանը, իհարկե, անհանգստացել էին։*

— *Ո՞ւր էիր կորել, — առաջին անգամ տեսա հորս բարկացած։*

— *Ձե՞ս տեսնում՝ ինչ դրություն է, — ասաց մայրս։*

*Բայց իմ գլուխը երջանիկ միտք եկավ.*

— *Քեռի Վարյուսն ուղարկեց Ցոլակենց տուն, ասաց՝ գուցե Ռուբենն էլի այնտեղ գնացած լինի։*

— *Հա՜, — մեղմացավ հայրս, — խեղճ մարդ, ամբողջ օրը դադար չի առել։ Ախպեր, ախր ինչ պատահեց էդ երեխային։*

*(Շարունակելի)*





digitised by A.R.A.R.@



«ՊԻՈՆԵՐ» ամսագրի 1965 թ. լավագույն նկարչական աշխատանքի մրցանակը շնորհվեց ԱՐՄԻՆԵ ԿԱԼԵՆՑԻՆ՝ հունիս ամսվա շապիկի համար։



«Նաբուգոդոնոսոր» պատմվածքի համար արձակագիր ՌԱՖԱՅԵԼ ԱՐԱՄՅԱՆԸ արժանացավ լավագույն գրական ստեղծագործության մրցանակին։



# Ա՜Խ, ՀԱՅՐԻԿ

ՀԱԿՈԲ ԳՈՒՐՈՒՆՅԱՆ

Երբ Սեդրակը տեսավ, որ ուսուցիչ Բունիաթյանը իրենց բակն է մտնում, փախավ տնից։ Գնաց թաքնվեց մոտակա անտառում և խոտերի վրա պառկած, նայում էր տոսախի թփերի տակով, որ զուգե նապաստակ տեսնի։ Ոչինչ չկար։ Միայն մի «մուկ-ննճղուկ», կարճ պոչը վեր ցցած, չթչթալով առաջ էր գալիս։ Երբ նկատեց Սեդրակին, հուկույն անհայտացավ։ Տղան աչքերը փակեց. «Ա՜խ, ընկեր Բունիաթյան, մինչև ե՞րբ պիտի հոգիս մաշես... Դասերից մի՛ ուշանա, մի՛ հենվիր նստարանին, ե՛տ նստիր...» Մեկ էլ ասես մոտը կանգնեց ուսուցիչ Բունիաթյանը և հնչուն ձայնով հարցրեց. «Բա, անհանգիստ տղա, գլխավոր հանցանքներդ ինչո՞ւ չես հիշում»։ Սեդրակը շփոթված աչքերը բացեց։ Ոչ ոք չկար։ Թուխ այտերին փոսիկներ գոյացնելով, չոր-չոր ժպտաց։

Մթնում էր, արևը բոսորավառ գլուխը կախած թփերի վրա, վերջին ներկերն էր քսում լեռան փեշերին։ Սեդրակը բոլորովին չմտահոգվեց. առաջին անգամը չէր, որ փախչում էր տնից։ Որոշեց գնալ չորանոց։ Թաքուն մոտեցավ հսկայական շինությանը։ Հարմար ժամանակ էր, բոլորը գնացել էին ծխախոտատերև քաղելու, պահակն էլ դեռ չէր եկել։ Մտավ լծասարքերի տակ։ Ջոր ճոնդի վրա դժվար էր լուսացնելը. չորանոցում փռված ծարխոտերից մի գրկաչափ խցկեց այնտեղ և պառկեց։

Լավ թաքստոց էր։ Հայրն էլ չէր կարող իրեն գտնել։ Միայն քաղցածություն էր զգում։ Թուքը կուլ տալով՝ աչքերը փակեց, որ մի կերպ քնի, լսեց Գուգո բիձի երգի ձայնը.

— Սելվոր կուգա՜, սելվոր կուգա՜...

Քիչ էր մնում, որ Սեդրակը բարձր ծիծաղեր. «Ջլինի՞ ինքն է հնարել»։ Նա լսել էր, որ Գուգո բիձեն մեկ-մեկ իր հնարած երգերն էլ է երգում։

Որքան թուքը կուլ էր տալիս, այնքան ասես Սեդրակի քաղցածությունն ավելանում էր։ Ամեն անգամ տնից փախչելուց հետո զղջում էր արածի համար, ինքն իր մեջ տանջվում, բայց խեղճությունն անցնում էր թե չէ, մոռանում էր ամեն ինչ ու էլի անհայտանում։

— Ինչո՞ւ սելվորներն ուշանում են, -ինքն իրեն խոսում էր Գուգո բիձան։ -Դե հեռու հանդեր են, մինչև թութունը բարձեն, մինչև ոլոր-մոլոր ճամփեքով գան...

Հրացանն ուսին դանդաղ գնաց չորանոցի մյուս ծայրը։ Հեռվից լսվում էր նրա ծիծաղաշարժ երգը։ Սեդրակի տրամադրությունը բարձրացել էր. «Համերգ է, համերգ... Ի՜նչ հետաքրքիր մարդ է



digitised by A.R.A.R.@

Գուգո բիձան» և ականջները սրած սպասում էր, թե էլ ինչ պիտի ասի։

— Հայ-հա՛յ, փալակ։

Ջքնես պահակ...

Սեդրակը բերանն էր բռնում, որ հանկարծ չպոռթկա. «Որտեղից էլ հնարում է խնկուն։ Դե, մենակ է, երևի չքնելու համար խոսում է ինքն իր հետ»։

Կրկին ժամանակ է անցնում։ Ծերունին քայլում-քայլում, կանգ է առնում անհանգստացած.

— Ուշանում են սելվորները։ Խա՛...

Գիշերը ծանրանում էր։ Սեդրակի կոպերը կամաց-կամաց փակվեցին։ Երազի նման լսում էր Գուգո բիձու երգերն ու քնի մեջ էլ ժպտում։

Վերջապես մեքենաները եկան, հետո սելվորները։ Էլեկտրական լույսերը վառվեցին, չորանոցը մեղվանոցի նման կյանք առավ. աղմուկ-աղաղակ, կատակներ, հրահանգներ...



Նկ. ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԱՐԱՄԲԵՅԱՆԻ

Սեդրակը վեր թռավ, գլուխը խփեց լծափայտին և նոր գլխի ընկավ, թե որտեղ է։ Քիչ հետո դարձյալ չորանոցը խաղաղվեց։

Սեդրակն էլի աչքերը փակեց, բայց քունը փախել էր։ Նա մտքի մեջ հաշվում էր Գուգո բիձու ոտնաքայլերը, բայց շուտով հաշիվը խառնեց։ Դրսից քամի էր փչում, մեջքն սկսեց սրսռալ, ոտները մրսեցին, կուչ եկավ ոզնու նման։ Ջէ, ցուրտ է, ի՞նչ անի։ Հակառակի նման, քամին էլ չէր դադարում։ Ստիպված շուռ եկավ մեջքի վրա և կամաց-կամաց սուզվեց քնի մեջ։

Երազում ասես ընկել էր մի ցուրտ աշխարհ, որտեղ շարունակ քամի էր փչում, այն էլ՝ բքախառն քամի, իսկ Գուգո բիձան կանգնած էր՝ հրացանը ձեռքին։ Նրա ուսերին, գլխին, նույնիսկ հրացանի վրա ձյուն էր նստել։ Զարմանում էր Սեդրակը, թե այդ ինչ շուտ եկավ ձմեռը։

Մեկ էլ Գուգո բիձան դարձավ Ջմեռ պապի, նրա բեղերն ավելի փարթամացան, գլխի մազերը երկարեցին, երկարեցին՝ ձյունափայլ ստացան։ Սկըսեց երգ ասել ու վեր-վեր թռչել։ Հետո դարձավ Սեդրակի կողմը և կատակի տալով բերանն ուռեցրեց ու ցուրտ փչեց նրա վրա։

Սեդրակն արթնացավ և սկսեց հազալ...

Գուգո բիձան ապշած քարացավ.

— Ո՞վ ես... սատանա՞, — և հրացանը ձեռքն առավ,— դե ասա՛...

Սեդրակը լեզուն կծեց, չգիտեր ինչ աներ։

— Ձեն հանիր, է՛լի, — խնկուն էլեկտրական լույսը վառեց,— ո՞վ ես, է՛...

Տղան ուրիշ ելք չունենալով, ակամա ասաց.

— Ես եմ, Գուգո բիձա, Սեդրակը։

— Ո՞ր Սեդրակը։

— Հովակիմի տղան։

— Գևորգենց Հովակիմի՞։

— Հա։

— Հրա՛շք... Որտեղի՞ց ես խոսում, ա՛յ տղա, դուրս արի։

Սեդրակը դուրս եկավ թաքստոցից և սփրթնած կանգնեց պահակի մոտ։

— Ի՞նչ ես անում էստեղ, ա՛յ տղա։

— Հեչ... տնից...— կմկմում էր Սեդրակը։

Գուգո բիձան լսել էր, որ Սեդրակը հաճախ տնից փախչում է, և հարցրեց.

— Ինչո՞ւ ես փախել։

Սեդրակը սկզբում էլի սկսեց կմկմալ։

— Ճիշտն ասա, տղաս, ես քո պապից էլ մեծ եմ։

Սեդրակն սկսեց խոստովանել։

— Ուսուցիչ Բունիաթյանն էր մեր տուն եկել։

— Ինչի՞ համար։

— Ասում է՝ չես լսում ինձ... կոպալ ինքնահոսով ես գրում, ձեռագիրդ փչացնում։ Տիգրանի թանաքով գրել սկսեցի, ասում է՝ քո թանաքն ունեցիր։

— Է՞լ ինչ է ասում,— ժպտալով ասաց Գուգո բիձան։



digitised by A.R.A.R.@

— Էլ՝ վզկապ կապիր. կարծես փոքր եմ: Երկու անգամ դասերից ուշացա...

— Վա՜յ, տղա ջան, վա՜յ... Դրանց համար ես տնից փախե՞լ ու էստեղ թաքնվել, որ ցուրտ կուլ տա՞ս,—կատակել սկսեց Գուգո բիձան:

Սեդրակը կարծես չէր ազդվում նրա խոսքերից, նույնիսկ ժպտում էր:

— Հայրդ ծեծո՞ւմ է քեզ:

Պատանին մի պահ լուռ մնաց: Հայրը միայն մի անգամ էր ծեծել, բայց թաքցրեց.

— Չի ծեծում:

— Խղճում է, բա՜... Ծնողից լավ բան չկա,—հառաչեց Գուգո բիձան,—երևի հիմա քեզ են ման գալիս:

Սեդրակը լուռ էր:

— Նստենք էս ծառխոտերի վրա, լույսն էլ հանգցնենք:

Նստեցին իրար դիմաց: Խորհրդավոր լռության մեջ Գուգո բիձան խոսել սկսեց.

— Ծնողից լավ բան չկա: Բա՜: Երբ հիշում եմ հորս... Ա՜խ, հայրիկ... Կոշկակար էր հայրս: Ամբողջ գիշերը լուսացնում էր կոշկակարական փոքրիկ սեղանի առաջ: «Դե հերիք է, ա՜յ մարդ, մեռցրիր քեզ»,—ձայն էր տալիս մայրս:

«Հա՛, հա՛, հիմա: Կրունկն էլ մեխեմ, հետո...»

Մայրս նայում էր շաղված աչքերով, նայում, ու գլուխը կամաց-կամաց իջնում էր բարձին:

Ու ինչքան էլ գիշերն արթնանում էի, էլի նըստած էի տեսնում հորս: Բա հեշտ բան ես կարծո՞ւմ ութը հոգու պահելը: Էն էլ էն օրերին: Շատ դժվար էր:

Գուգո բիձան լռեց: Քիչ հետո գլուխը բարձրացրեց.

— Ու հիմա դու... հայրի՜կ-հայրի՜կ...—կրկին հառաչեց ծերունին: Սեդրակն առաջին անգամ էր լսում մեծահասակ մարդու այդքան ջերմ, կյանքի դառնություններով լեցուն զրույց:

Գուգո բիձան վերարկուի գրպանից հանեց հաց ու պանիր, թաքցրած տեղից՝ պոմիդոր ու վարունգ.

— Կե՛ր, Սեդրակ, քաղցած կլինես:

Տղան նույնիսկ չշարժվեց.

— Դե լավ, քնիր, մի՛ տխրի: Էս վերարկուս էլ վրադ գցեմ ու առավոտյան վաղ կգնաս տուն, հետո՝ դպրոց: Մեռնեմ զանգի ձենին...

Պատանին քարացել էր նույն դիրքում: Նրա՝ աչքին ասես երևում էր իրեն որոնող հայրը, տխուր ու հոգնատանջ: Բա մա՞յրը...

Գուգո բիձան պտտվեց չորանոցի շուրջը ու եկավ, մեկ էլ կռացավ, որ ծածկի Սեդրակին, զարմացավ. տղան չկար:

— Երևի տուն է գնացել,—ենթադրեց Գուգո բիձան ու, գլուխն օրորելով, ժպտաց:

ՎՐԱՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ

## ՏԱՏՆ ՈՒ ԹՈՌԸ

Փոքրիկ տղան շրջել է.
Ոտիկները թրջել է.
Անուշ բուրմունք շնչել է.
Խոտ ու ծաղիկ փնջել է:
Ու նա քաղած փունջն անգին
Բերեց տվեց տատիկին:
Տատ ու թոռնիկ պար եկան.
Շող ու ծաղիկ վար եկան.
Հանաք հո չէ՞ր, բարեկամ,
Տա՜տն էր հարյուր տարեկան:

## ԱՌԱՎՈՏ

Վերին սարում ժպտաց առուն,
Ձորում երգեց մի կաքավ:
Արևի հետ մեր աշխարհում
Այգին հազար շող հագավ:
Լույսը բացեց հազար մի դուռ,
Անցավ հազար մի թաղով:
Մեղմ երգեցին հանդերը լուռ
Ու արթնացան ծիծաղով:
Հանդի ճամփան բռնեց դարձյալ
Սևուկ ավտոն սըլնթաց,
Ցորենարտի ծովում դարձյալ
Տրակտորը հռնդաց:
Հոտ ու նախիր գյուղից ելան
Ծանոթ ճամփով արոտի:
Ու բալիկներն իմ թռվռան
Ելան գիրկը թարմ օդի:

digitised by A.R.A.R.@

# ԼԱՎՈՒԹՅՈՒՆ ԱՐԱ ՈՒ ՋՈՒՐԸ ԳՑԻ

Նվիրում եմ մաթեմատիկոսներ Արտաշես և Քնարիկ Շահինյաններին, որոնք պատմեցին ինձ այս եղելությունը, ու ես գրի առա:

*ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ*

*Նկ. ԱՐՄԻՆԵ ԿԱԼԵՆՑԻ*

Երկու շաբաթ էր, ինչ դպրոցներում պարապմունքները վերսկսվել էին, բայց քաղաքում շոգերը դեռ չէին կտրվել: Գնում էինք Սևան՝ մեկ անգամ ևս լողանալու, զովանալու:

Հրազդան չհասած, հայրս հանկարծ մեքենան կանգնեցրեց, շտապ դուրս թռավ և ինձ ու մայրիկիս էլ կանչեց.

— Եկե՛ք, շո՛ւտ, տեսեք ի՞նչ եմ ցույց տալիս...

Մենք վազեցինք նրա հետևից, և ինչ տեսանք. մի ճնճղուկ՝ թևերը կախ-կախ, տոտիկները գետնին մեխած, սրտաճաք ծվծվում է:

— Մոտիկ հեռագրասյուներից կամ լարերից մեկին թառած՝ աչք է ածել շուրջը, նկատել է ճանապարհի մեջ ընկած հացի փշուր, հատիկ, կերակրման որևէ բան, թռել է, եկել-իջել ասֆալտին, կերը կտցել-կուլ տվել և հետո, երբ փորձել է թռչել, չի կարողացել, տեսե՛ք, բարակիկ ճանկերը թաղվել են հալված ասֆալտի մեջ, ամրացել նրան գետնին...

— Վա՜յ, խե՜ղճ, խե՜ղճ...— մայրս խոնարհվեց ծիտիկի վրա,— երևում է, վաղուց է կպել-մնացել... խե՜ղճ, խե՜ղճ... ինչպես է պատահել, որևէ անզգույշ վարորդ անիվների տակ չի ճզմել նրան... Վա՜յ, խե՜ղճ, խե՜ղճ...

— Խե՜ղճ...— պպզելով ծիտիկի մոտ, միայն մեկ անգամ շշնջացի ես ու լռեցի. կոկորդս սկսել էր քոր գալ, աչքերս վարագուրվել էին արցունքով:

— Ոչինչ, այնուամենայնիվ բախտավոր ծիտիկ է: բարի մարդկանց հանդիպեց,— մխիթարեց մեզ հայրս,— հիմա մենք նրան ազատություն կպարգևենք... Սպասեք, սպասեք, այդպես քաշել չի կարելի, դուք նրա տոտիկները կամ ճանկերը կվնասեք...

Նա գրպանից դանակը հանեց, մայրս պարզեց ձեռքը, բայց ես նրանից շուտ հասա դանակին: Նրանք ծիտիկին փրկելու գործը թողին ինձ: Դանակը զգույշ տարա ծիտիկի ճանկերի տակ և ձյութե կոշիկների ու կրկնակոշիկների հետ պոկեցի գետնից:

— Աղջի՛ս... դե հիմա կոշիկներն ու կրկնակոշիկներն էլ հանիր հագից, թե չէ կթռչի կգնա, կնստի հեռագրալարերին, մի ծառի, մի քարի ու այս անգամ էլ այնտեղ կկպչի-կմնա:

Մայրս թեթև անձեռոցիկ տվեց: Ուզում էր չտալ: Ձեռքերն այնպես էին քոր գալիս, այնպես էր ուզում ինքն անել, բայց ստիպված տվեց: Ես խնամքով սկսեցի ծիտիկի տոտիկների ձյութը մաքրել: Կրկնակոշիկները հանեցի, բայց կոշիկները ինչ արի-չարի, դուրս չեկան:

— Նավթով միայն կարելի է հանել,— ասաց հայրս, որի ձեռքերը ոչ պակաս, քան մորս, ամբողջ ժամանակ զգում էի, որ քոր են գալիս, հազիվ էր իրեն զսպում, որ չպարզի, հափշտակի ծիտիկին ձեռքիցս,— Նստեք, հասնենք Հրազդան, մեկն ու մեկից նավթ խնդրենք:



Մտանք Հրազդան ու առաջին տան մոտ կանգ առանք:

— Դուք սպասեք, ես մենակ կգնամ,— պահանջեցի ես, երբ տեսա, թե ինչպես հայրս մի կողմից, մայրս մյուս կողմից դուրս թռան մեքենայից և ուզում էին ինձանից առաջ ընկնել: Նրանք հայացքներ փոխանակեցին, աչքով արին իրար ու



digitised by A.R.A.R.@

եռ գործան։ Ես ծիտիկի փոքրիկ, տաքուկ, դող-դողացող մարմինը իմ դողդողացող ափի մեջ, վա-զեցի, մոտ տան բակը։ Պատշգամբում, հեքիաթ-ների բարի տատիկի նման մի տատիկ, հին տաշ-տակը առջևը, լվացք էր անում, ինքն իրեն քթի տակ խնդմնդում ու կես երգի հանգով ինչ-որ բառեր էր մռմռում։

— խնդմնդալով ժպտում է, աչքի պոչով բազմա-նշանակ նայում ինձ ու ասես պատրաստվում է թևերը փռել ու պար գալ։

Օգտվում եմ նրա կարճ դադարից և շտապում միտքս պարզել.

— Տատիկ ջան, տես էս ծիտը... բա չես ասի, էսպես ու էսպես...



— Տատիկ ջան, նավթ ունե՞ք... — շնչասպառ մոտեցա նրան։

— Նա՞վթ... դուք ձեր տանը նա՞վթ եք բանաց-նում, աղջիկ ջան, — կես երգի հանգով ու հեգ-նանքով հարցրեց նա, գործը եռանդուն առաջ տանելով...

— Ոչ։

— Մենք էլ ոչ, — երգով վրա բերեց նա և ապա լրջացավ, — էս ո՞ր թիվն է, որ նավթ բանացնենք, գազն ու էլեկտրականությունը թողած...

Ոչ թե հեքիաթների բարի, այլ մի սովորական պարծենկոտ տատիկ դուրս եկավ նա։

Գյուղում ենք ապրում, համա չկարծես, թե քաղաքացուց մի բանով ետ ենք մնում։ Դուք ի՞նչ ունեք, աղջիկ ջան, որ մենք չունենք. նոր ձևի կահո՞ւյք՝ հենց քիչ առաջ տղես բերեց, ավ-տոյից դատարկեց, դեռ չենք բացել, ասում են քաղաքում էլ քիչ տներում կգտնես դրանից։ Սառնարա՞ն՝ մենք էլ ունենք, հեռուստացո՞ւյց՝ ունենք, լվացքի մեքենա՝ հրեն էնտեղ դրած է։ Սրանք որ լվանում եմ՝ մանր-մունր բաներ են, չարժեր մեքենան բանի գցել... Էն ի՞նչ ավտո է, ճամփի վրա կանգնած, — նոր միայն նկատեց նա, — ձե՞րն է... Ավտոյով էլ չես զարմացնի, ավտո էլ փեսաս ունի... Հը՞, էլ ի՞նչ կասես...

— Հա՞... վա՞յ... բոռանամ, — սթափվում է նա, — բա ի՞նչ անենք։

Գնում է ընկնում քունջ ու պուճախ և վերա-դառնում ժանգոտ նավթամանը ձեռքին։

— Քո բախտից ու էդ ծտի բախտից տեսնենք մեջը մի բան մնացե՞լ է. երկու տարի է սա ան-գործ ընկած է...

Իմ բախտից էր, թե՞ ծտի բախտից, մեջը մի բան մնացել էր։

Տատիկը մի բրդի կտորի վրա նավթամանի մեջ պահպանված նավթը քամեց, ու ես քուրջը ծիտի-կի տոտիկներին մոտեցրի թե չէ, սև կաշիկները ծվեն-ծվեն թափվեցին, նրա ճանկերը արագորեն իրենց բնական տեսքն ու գույնն առան։

— Շնորհակալություն, տատիկ... — քուրջը նե-տեցի, շուռ եկա, որ վազեմ հայրիկիս ու մայրի-կիս մոտ, որոնք ճանապարհի եզրին կանգնել էին իրար ձեռք բռնած, ժպտալով զրուցում էին, ան-շուշտ իմ մասին, և անհամբեր սպասում ինձ։

— Ի՞նչ ես անելու հիմի դրան, — ձայն տվեց տատիկը։

— Եթե թևերը կտրված չեն, բաց եմ թողնե-լու։

— Հա՞, հա՞, աղջիկ ջան, բաց թող, — աղաղա-կեց տատիկը հետևիցս, — թող գնա իր արևի ձենն



digitised by A.R.A.R.@

ածի: Ինձանից քեզ խրատ, աղջիկ ջան, լավություն արա ու ջուրը գցի…

Ես էլ նայեցի. նա նման էր հեքիաթների բարի տատիկին: Ծրթունքների անկյուններում, ինչպես և իր ատամի մեջ, ինչ-որ մի շատ կարևոր բան էր թաքնված, որ խոսքով չես կարող բացատրել:

Ծիտիկը բռիս մեջ շարունակում էր դողդողալ: Ասես բռիս միջինը փետուրներով պարուրված մի տաք, նվաղուն սրտիկ էր: Մերոնց մոտ հասնելով, ես ափս բաց արի, համոզված, որ անօգնական այդ սրտիկը ուժ չի ունենա թռչելու, բայց աչքս դեռ չէի թարթել, մեկ էլ տեսա նրան օդում, թը՛ռ, թևերը թափահարելով թռչում էր:

— Բարի ճանապա՛րհ,— հայրս բարձրացրեց գլխարկը:

— Բարի ճանապա՛րհ,— թեթևացած շունչ քաշեց մայրս:

— Բարի ճանապա՛րհ,— ուրա՞խ, թե՞ տխուր, բայց լացակումած շշնջացի ես:

Մենք շարունակեցինք մեր ճանապարհը:

Իսկ հետո, տեսեք, թե ինչ պատահեց:

Հոգնա՞ծ էի, թե՞ օրվա տպավորությունները խանգարեցին, չկարողացա այդ երեկո դասերս ինչպես որ պետքն է սովորել: Ընկեր Դանիելյանը ինձ վաղուց դաս չէր հարցրել, և ես նախազգում էի, որ վաղը հարցնելու է: Բայց չկարողացա ուժ գործ դնել վրաս և աշխարհագրության դասը երկրորդ-երրորդ անգամ կարդալ: Թարսի պես, որ օրը որ դասդ լավ չգիտես, այդ օրը հենց այդ դասն էլ հարցնում են: Բախտիս վրա չէի կարող հույս դնել: Բախտս ինձ շատ էր դավաճանել:

Վախը սրտումս պառկեցի քնելու… Եվ եղավ այն, ինչից վախենում էի: Ընկե՛ր Դանիելյանը կարդաց անուն-ազգանունս, շանթահարվածի պես ելա, կանգնեցի ու, ոտքերս քարշ տալով, մոտեցա գրատախտակին:

— Ցույց տուր Սկանդինավիան, սկանդինավյան երկրներն ու մայրաքաղաքները:

— Սկանդինավիա… Սկանդինավիա,— մտմըտում եմ ես: Բառը սկզբում ծանոթ թվաց, քանի կրկնեցի, դարձավ ավելի ու ավելի անհասկանալի: Ընկեր Դանիելյանը սպասում է: Դասարանը շունչը պահած՝ ինձ է նայում… Միտքս գնալով շաղվում է, շփոթվում, աչքերիս առաջ մառախուղ է… Մեկ էլ լսում եմ ականջիս տակ ծիտիկի ծվծվոցը, հենց այն ծվծվոցը, որ երեկվանից մնացել էր ականջիս մեջ.

— Ծիվ-ծի՜վ… ծիվ-ծի՜վ…

Ծվծվոցը դառնում է ավելի ու ավելի հստակ, ավելի ու ավելի մոտիկ, ոչ թե ականջիս տակ, այլ՝ ականջիս մեջ:

— Ծիվ-ծի՜վ… ծի՛վ-ծի՜վ… Նո՛ր-վեկ, յը՛-սեր…

Նա հուշում է՝ կտուցը ականջիս մեջ դրած,— Ֆինլանդիա՝ Հելսինկի, Շվեդիա՝ Ստոկհոլմ…

Կրկնում եմ, շարունակությունը հիշում արդեն ինքս, հենց կապ եմ ընկնում, լսում եմ նորից:

— Ծիվ-ծի՜վ… — ծիտիկը հուշում է:

— Մեկ անգամ էլ կրկնիր,— պահանջում է ընկեր Դանիելյանը: Կրկնում եմ այս անգամ համարյա թե առանց կապ ընկնելու: Կրկնում եմ երրորդ անգամ…

Այն, ինչ կատարվեց գիշերը՝ երազում, համարյա թե նույնությամբ կրկնվեց առավոտյան, աշխարհագրության դասին:

— Ապրե՜ս, Լուսիկ, «հինգ»,— ասաց ընկեր Դանիելյանը:

Այդ օրվանից սկսած, հաճախ, շատ հաճախ, նեղն եմ ընկնում ու գիշերն այցելում է ինձ իմ այն ծիտիկը, օգնում բնածս տեղը, երազիս մեջ, թերի իմացած դասերս ջրի պես սովորելու:

Եվ ես հաճախ, շատ հաճախ հիշում եմ հրազդանցի այն տատիկին, որ նման էր հեքիաթների բարի տատիկներին: Ու կարծես սկսում եմ հասկանալ խորհուրդը նրա շրթունքների անկյուններում թաքնված այն գաղտնիքի, որ կար և իր ատամի խոսքի մեջ.

— Լավություն արա ու ջուրը գցի…





digitised by A.R.A.R.@

ՄԵՐ ՓՈՔՐԻԿ ՆԿԱՐԻՉՆԵՐԻ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԸ



ՄԵՐ ՍԱՐԸ

Սևակ Սաֆարյանը Լեռնային Ղարաբաղի Բերգաձոր գյուղի դպրոցի 8-րդ դասարանում է սովորում: Դասերից հետո նա սիրում է նկարել իր հայրենի բնությունը, և դուք տեսնում եք, թե նա որքան սիրով է այդ արել:

ՄԵՐ ԳՅՈՒՂԸ

digitised by A.R.A.R.@

# Պանդոկը

ԿԱՐԷՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՆԱՆՈՒՇՅԱՆԻ

Հեռավորությունը հինգ հարյուր կիլոմետր հազիվ թե լինի,— ասաց Դիմզան:

— Եվ պանդոկը չկա՞,— հարցրեցի ես, քննախույզ նայելով ուղտի կանաչավուն աչքերին: Նա անթարթ դիմացավ իմ հայացքին և անվրդով պատասխանեց.

— Չկա: Ոչ մի պանդոկ էլ չկա:

Ես ավելի հարմարավետ տեղավորվելով բազկաթոռում՝ մի անգամ էլ աչքի անցկացրի Լոուելլի տեղեկագիրքը:

— Ասում ես՝ չկա... — ես զուր անհրաժեշտ էր: Սա որ մոլորակն է, քո կարծիքով:

— Լիբերտաս,— պատասխանեց Դիմզան:

— Ճիշտ է: Ըստ Լոուելլի Լիբերտաս մոլորակի վրա պետք է պանդոկ լինի: Իսկ դու պնդում ես, թե՝ չկա:

Պանդոկ չկա:

— Դու քիչ առաջ ասացիր, թե լավ ժամանակ ես անցկացրել: Ասացիր, որ եթե ես էլ գնամ, չեմ զղջա:

— Այո: Ես հաճելի զրույց ունեցա հաշվիչ մեքենայի հետ,— անվրդով ասաց Դիմզան: — Եվ նա ինձ էներգիայով հյուրասիրեց: Այնքան առատորեն հյուրասիրեց, որ ես արդեն հարբել էի: Նույնիսկ սկսեցի երգել: Պատկերացնում ես:

— Իհարկե, իհարկե,— վրա տվեցի ես, սարսափելով այն մտքից, թե նա հանկարծ կփորձի ինձ համար երգել: — Բայց զարմանալի է, որ պանդոկը չկա ու փոխարենը ինչ-որ հաշվիչ մեքենա է:

— Զարմանում են միայն մարդիկ, այն էլ հատկապես նրանք, ովքեր... Դիմզան հանկարծ լռեց ու շփոթմունքից հայացքը հառեց առաստաղին: Առաստաղի վրա արտակարգ ոչինչ չկար: Սովորական աստղաթիռի սովորական առաստաղ էր:

— Ովքե՞ր,— հարցրի ես:

Դիմզան մի լավ հատկություն ուներ. ուղղակիորեն տրված հարցին անպայման պատասխանում էր առանց սեթևեթելու կամ կեղծելու:

— Նրանք, ովքեր տգետ են,— ասաց նա: Եվ ես իսկապես վիրավորվեցի մարդկային ցեղի նկատմամբ նրա հայտնած կարծիքից:

— Իզուր ես վիրավորվում,— ասաց Դիմզան: — Երբ դու կասկածում ես իմ խոսքերին, դրանով իսկ ակնարկում ես, թե կարող եմ նաև ստել: Դա էլ ինձ համար է վիրավորական: Բայց ես չնեղացա բեզանից, որովհետև երկարատև ճանապարհորդության ժամանակ լավ չէ, երբ ընկերները փոխադարձաբար վշտացնում են իրար: Մենք մի հինգ հարյուր տարի էլ դեռ իրար երես ենք տեսնելու այս աստղաթիռում:

— Ներող,— ուղղեցի ես: — Աստղաթիռի ժամանակով՝ մոտ քսանութ ամիս:

— Թեկուզ: Կարծում ես խոսակիցների համար քսանութ ամիսը քի՞չ է:

Զգալով, որ խոսակցության թեման փոխվում է, ես գերադասեցի լռել:

Մի բան անժխտելի էր ինձ համար, որ Լոուելը, այդ խիզախ ու համարձակ ճանապարհորդը, որի բծախնդրության մասին եղած ավանդությունները մեզ են հասել հարյուրամյակների խորքերից, սխալված լինել չի կարող: Եթե նա գրում է, թե Լիբերտաս մոլորակի վրա տիեզերական ճանապարհորդների համար սքանչելի մի պանդոկ կա, ապա դա զուտ ճշմարտություն է և միայն ճշմարտություն: Ավանդություններից մեկը պատմում է, որ այդ պանդոկը հենց ինքը՝ Լոուելն է կառուցել: Ասում են, թե այդ կառուցման համար նա հիմնականում օգտագործել է Լիբերտաս մոլորակի տարօրինակ առանձնահատկություններից մեկը: Ասում են նաև, որ Լոուելը քսանչորսերորդ դարում հայտնագործելով այդ մոլորակը, անվանել է Լիբերտաս, այսինքն՝ Ազատություն, քանի որ այստեղ յուրաքանչյուր մարդ իբր լիակատար ազատության մեջ է լինում ինքն իր հետ, իր մտքերի, խոհերի հետ:

Լիբերտասը գտնվում է մեծ ճանապարհների խաչմերուկում, և միշտ էլ տիեզերագնացները դադար են առնում այստեղ՝ Լոուելլի պանդոկում լինելու համար: Ովքեր արդեն եղել են պանդոկում, ոչինչ չեն պատմում, երբ նրանց հարցնում են մանրամասնությունների մասին, միայն հիացմունքից ճպպացնում են լեզուները ու ծոր տալիս. «Օ՜... մարդ իր աչքերով պետք է տեսնի: Պատմել հնարավոր չէ»:

Այդ էր պատճառը, որ ես վճռեցի դադար առնել Լիբերտասի վրա ու անպայման տեսնել այդ պանդոկը: Ես ինձ կարող էի այդքան ազատություն տալ, քանի որ բեռնատար աստղաթիռ եմ վարում, ուղևորներ չկան: Ես եմ ու Դիմզա ռոբոտը: Այս փոքրիկ դադարը ինձ կուշացնի մի

բանի ամիս միայն: Սակայն դա գրեթե ուշացում չէ բեռնատար աստղաթիռների համար:

— Ի՞նչ որոշեցիր,— սթափեցրեց ինձ Գիմզայի ձայնը: — Թեև պանդոկ չկա, բայց հաշվիչ մեքենայի հետ զրուցելն ու էներգիայով հյութավորվելն էլ պակաս հաճույքներ չեն: Ես նրա հետ այնպես մտերմացա, որ խոստացա հարմար առիթով դարձյալ այցելել:

— Արդեն ընկեր ես ճարել, հա՞:

— Բայց ընդհից հո չեմ դժգոհում,— ասաց Գիմզան:

— Մի հին ասույթ կա,— ասացի ես: — Շատ հին: Ասա ընկերդ ով է, կասեմ ով ես դու:

— Ուզում ես խայթել ինձ,— ասաց Գիմզան: —Ճշմարիտ խոսքը խելոք մարդուն երբեք չի խայթում:

— Բայց դու հո մարդ չես:

— Սխալվել ես,— պատասխանեց Գիմզան: — Ես սովորական ռոբոտ եմ և հաշվիչ մեքենայի հետ ազգակցական կապս ավելի ամուր են ու մոտիկ, քան թե մարդու հետ: Ավելի ճիշտ՝ մարդկանց հետ ես ընդհանրապես ազգակցական կապեր չունեմ: Եթե կուզես իմանալ...

Գիմզան սկսեց իր շատախոսությունը, և ես շտապեցի կարճ կապել այս ամենը:

— Լավ,— ընդհատեցի նրան: — Լավ ես արել, որ քեզ նման մի ընկեր ես ճարել պանդոկը որոնելու փոխարեն:

— Ես պանդոկն եմ որոնել, բայց մի՞թե մեղավոր եմ, որ պանդոկի փոխարեն հաշվիչ մեքենա դուրս եկավ,— ասաց Գիմզան:

— Ոչինչ, ինքս կգտնեմ,— ասացի ես:

— Ուրեմն, վճռեցիր գնա՞լ:

— Իհարկե, կասկածո՞ւմ էիր,— հեգնանքով ասացի ես և ոտքի ելնելով՝ խնդրեցի նրան նախապատրաստել ամենաարագ մեքենան:

Աստղաթվի ժամանակով հաջորդ օրը նախաճաշից հետո ես ճամփա ելա: Ղեկավարությունը հանձնելով ամենաարագի ինքնաշարժ սարքերին, ես թիկնեցի բազկաթոռին ու կիսափակ աչքերով պատկերացրեցի այն պանդոկը, որն անպայման պետք է գոյություն ունենար Լիբերոսի վրա:

Չգիտեմ ինչու, պանդոկն ես պատկերացնում էի անծանոթ մի ճանապարհի եզրին, պատկերացնում էի նրա փայտաշեն պատերը, խորհրդավոր բակը, ճռճռացող սանդուղքները... մի խոսքով՝ ճիշտ այնպես, ինչպես կարդացել եմ հինավուրց գրքերում, որտեղ հազար ու մի պատմություններ կային նաև տարօրինակ գանձախույզների և միակնանի ծովահենների մասին: Արտասովոր անուններ են ունեցել այդ պանդոկները, ասենք՝ «Ճնածկան լողակ», «Նիզակակիր արջ» կամ «Երեք խոզուկներ»:

... Ամենաարագը կանգ առավ: Ղեկավարման ինքնաշարժ սարքերի ցուցմունքների համաձայն ես արդեն գտնվում էի մոլորակի այն տեղամասում, որտեղ պետք է լինեին տիեզերքի ամենաառանձնի պանդոկը և որտեղ այդ պանդոկի փոխարեն Գիմզա ռոբոտը հայտնաբերել էր ընդամենը մի հաշվիչ մեքենա:

Սկզբում ես աչքերիս չհավատացի: Ինձ թվաց, թե շարունակվում է իմ երևակայության թռիչքը կիսանիրհի մեջ: Ես կանգնել էի ամենաարագ մեքենայի մոտ, անխնամ մի ճանապարհի վրա: Իսկ հեռու գտնվում էր փայտաշեն մի պանդոկ, որի ճակատին հսկայական ցուցանակ կար: Այդ ցուցանակը մի բանի որ հեռու բառս տարբերակներին չխնայելով, երեք կաղնիներ պատկեր: Մի շատ տաղանդավոր անհայտ նկարիչ խոզուկներ էր նկարել ցուցանակի վրա: Իսկ պանդոկը կոչվում էր «Երեք խոզուկներ»: Հիշելով, որ ըստ Գիմզայի զարմանում են միայն ոզնիները, ես վճռեցի ինչ գնով էլ լինի՝ չզարմանալ ու մտա խորհրդավոր-կիսամութ բակը: Հեռու մի անկյունից լսվեց շան խռպոտ հաչոցը: Ինչ-որ մեկը թմբուկը պտտելով ջրհորից ջուր էր քաշում: Փայտե աստիճանները տխուր ճռճռացին ոտքերիս տակ: Ես հրեցի դուռը և հայտնվեցի փոքրիկ սրահում: Հաճախորդներ գրեթե չկային: Միայն անկյունի սեղանն էր զբաղված: Մի քանի հոգի նստած գարեջուր էին խմում: Նրանցից մեկը շրջվեց իմ կողմն ու ինձ նայեց իր միակ աչքով:

— Բարև ձեզ,— ասացի ես:

Միակ աչքի հայացքը պոկվեց ինձնից: Միականին վերցրեց գարեջրի գավն ու քաշեց գլխին:

— Բարև, համեցե՛ք,— ընդառաջ գալով, ասաց «Երեք խոզուկներ» պանդոկի տնօրենը: — Գարեջո՞ւր...

— Այո,— ասացի ես, նստելով բազմաթիվ ազատ սեղաններից մեկի առաջ: Ես շարունակում էի ինձ զգալ, որպեսզի չզարմանամ: Հետո վճռեցի, որ հաճելի բանից մարդ պետք է միայն բավականություն ստանա: Ձեռքիս ափով շոյեցի սեղանի երեսը, որի վրա ճարպի ու ներծծված գարեջրի հետքեր կային, տախտակները կոպտատաշ էին, սակայն ժամանակի ընթացքում արդեն փոքր-ինչ հղկվել էին բազմաթիվ հաճախորդների հագուստների թևերը մաշելով:

— Համեցե՛ք,— ասաց պանդոկապանը, գարեջրի հսկա գավը դնելով սեղանի կենտրոնում:

— Շնորհակալություն,— ասացի ես: — Իսկ այստեղ գիշերել կարելի՞ է:

— Իհարկե,— պատասխանեց նա, նստելով իմ դիմաց:

Ես մի քանի կում գարեջուր խմեցի: Պանդոկապանը զվարթված ինձ էր նայում: Զգացի, որ հետս զրուցելու ցանկություն ունի:



digitised by A.R.A.R.@

— Որտեղի՞ց եք գալիս,— այս հարցով նա հաստատեց իմ ենթադրությունը։

— Շատ հեռվից։

— Երկա՞ր ժամանակ է, որ ճանապարհ եք դուրս եկել,— հետաքրքրվեց նա։

— Երևի մի չորս կամ հինգ հարյուր տարի կլինի։

Նա ուղղեց տակի աթոռակն ու արմունկները հենելով սեղանի եզրին, աչքերը կկոցած ինձ նայեց։

— Հավատա՞մ,— վերջապես հարցրեց նա։

Ես ուսերս վեր քաշեցի։

— Իսկ դեպի ո՞ւր եք գնում։

— Մի տեղից գնում եմ դեպի մյուսը,— պատասխանեցի ես։

Նրա դեմքի վրայով մի ժպիտ սահեց։

— Հավատա՞մ։

— Ինչպես կամենաք,— պատասխանեցի ես, խմելով գարեջուրը։ — Լավն է։

— Քանի՞ օր եք մտադիր մեր պանդոկում մնալ,— հարցրեց նա։

— Տեսնենք,— անորոշ պատասխանեցի ես։

Պանդոկապանը դանդաղ ու բծախնդրությամբ լցրեց ծխամորճը, վառեց և ախորժակով ներս քաշեց ծուխը։

— Լսեք, ձեր պանդոկը իսկապե՞ս գոյություն ունի... — հարցրեցի ես ու, տեսնելով նրա հեգնական քմծիծաղը ծխի կապտավուն շղարշի միջից, շտապեցի ուղղել ինքս ինձ. — Ուզում եմ ասել, ձեր պանդոկը վաղու՞ց է գործում։

— Հըմ... — նա բերանից հանեց ծխամորճը։ — Ինչպես ասեմ... Այն ժամանակներից ի վեր, երբ Լոուելը հայտնագործեց այս մոլորակը և տեղադրեց ինչ-որ ապարատներ։ — Պանդոկապանը ծխամորճը մոտեցրեց բերանին, բայց շուրթերից մի փոքր հեռու պահելով, ասաց. — Առաջի՞ն անգամն եք այս կողմերում։

— Այո,— պատասխանեցի ես։

— Հըմ... — դարձյալ փնչացրեց նա։ — Հիշու՞մ եք Դանայա մոլորակի հետ կապված դեպքը։

Ես շփոթվեցի։ Նայեցի շուրջս։ Անկյունում նստածները մեզ վրա ոչ մի ուշադրություն չէին դարձնում։ Դանայա մոլորակի դեպքը... Ես միշտ ջանացել եմ չհիշել, մոռանալ, ընդմիշտ մոռանալ այդ տխուր պատմությունը։ Դանայա մոլորակի վրա մի խումբ տիեզերագնացներ ընկել էին ծանր դրության մեջ։ Անհրաժեշտ էր շտապ օգնություն հասնել նրանց։ Եվ եթե հնարավոր չլիներ վայրէջք կատարել մոլորակի վրա ու նրանց փրկել, ապա գոնե սննդամթերք նետել նրանց ժամանակավոր կացարանի շրջանում, որպեսզի վթարյալները կարողանային դիմանալ, մինչև հնարավոր լիներ փրկությունը։ Այդ առաքելության համար պահանջվում էին կամավորներ, որովհետև վտանգավոր գործ էր դա։ Երկու հոգի անմիջապես հայտնեցին իրենց պատրաստակամությունը։ Երրորդը ես էի։ Բայց անհրաժեշտ էին երկու հոգի։ Նրանք երեք ժամ հետո մեկնեցին, իսկ ես մնացի։ Ոչ ոք այնպես էլ չկռահեց, որ ես գնալ չէի ուզում։ Բայց և անհարմար էր ձեռքերը ծալած նստել, երբ Դանայա մոլորակը թակարդի մեջ էր առել մեր ընկերներին։ Անհարմար էր, բայց ես էլ բոլորովին միտք չունեի ընկնել նույն թակարդը։ Այս ամենը միայն իմ գաղտնիքն էր։ Ուրիշ ոչ ոք չգիտեր այդ մասին։ Ընդհակառակը, բոլորը ամեն առիթով հիշում էին այս պատմությունը և ցավակցում, որ անհրաժեշտ էին երկու և ոչ թե երեք հոգի։ Իսկ որտեղի՞ց կարող էր այս ամենն իմանալ պանդոկապանը։

— Ինչու՞ լռեցիք,— հարցրեց նա։ — Ինչու՞ եք խուսափում պատասխան տալուց։

— Ի՞նչ պատասխան։

— Դուք երբեք չեք մտածել այդ պատմության մասին։ Միշտ խուսափել եք թեկուզ մեկ անգամ ինքներդ ձեզ հետ հաշվի նստելուց։ Չե՞ք կարծում, որ ձեր վարմունքը... — Նա լռեց, կամենալով երևի ավելի մեղմ արտահայտություն գտնել իմ վարմունքը բնորոշելու համար։



Տիրեց մի ծանր, ճնշող լռություն, որովհետև նա այդպես էլ չգտավ այդ մեղմ արտահայտությունը։ Ես խմեցի գարեջուրը։

— Իսկ դուք ո՞վ եք,— վերջապես խոսեցի ես։

— Ե՞ս... ես ձեր երազած պանդոկի տնօրենն եմ։

— Իմ երազա՞ծ։



digitised by A.R.A.R.@

— Մի քանի օր առաջ էլ Դիմզայի երազած հաշվիչ մեքենան էի։
— Ես ոչինչ չեմ հասկանում։
— Ես՝ նույնպես,— պատասխանեց նա։



— Եթե հիմա ես ուրիշ բա՞ն երազեմ...
— Ուշ է արդեն։ Ոչինչ չի փոխվի։ Ձեր երազածը այլևս չի կարող ազդել Լուսելի ապարատների վրա,— բացատրեց նա։
— Այդ ի՞նչ ապարատներ են։
— Դրանք միայն չնչին մի հավելում են Լիբերտաս մոլորակի զարմանալի հատկությունների վրա։

— Հիմա դուք ի՞նչ եք առաջարկում,— հարցրեցի ես։ Իմ վարմունքը իրոք մարդավայել չի եղել։

— Դուք, վերջապես, այդ բանը խոստովանեցիք ինքներդ ձեզ։ Իսկ հիմա առաջարկում եմ հանգստանալ։

— Ինքս ի՞նձ խոստովանեցի,— զարմացա ես, որովհետև ոչինչ չէի հասկանում։

— Վերջին հաշվով ձեր երազանքը ձեզ էլ պատկանում է,— պատասխանեց նա։ — Եվ հիմա դուք ինքներդ ձեզ հետ եք հաշվի նստել։

— Հա՞... — ձայն տվեցի ես։ — Իսկ հնարավո՞ր է հանգստանալ։

— Անպայման։ Բարձրացեք վերև։ Երկրորդ հարկի հենց առաջին սենյակը ազատ է։

— Բայց ի՞նչ հատկություններ են դրանք,— հարցրեցի ես։

— Ոչ ոք կարգին չգիտե։ Լուսելը ինքը չհասցրեց ինչպես հարկն է ուսումնասիրել։ Բայց տվյալ դեպքում դա ի՞նչ կարևոր է։

— Բարի գիշեր,— ասացի ես։

— Բարի գիշեր,— մաղթեց նա։

Իմ ոտքերի տակ ճռճռացին փայտենի աստիճանները։ Արդեն երկրորդ հարկի բարձրությունից ես մի անգամ էլ նայեցի ցած՝ սրահին։ Անկյունում նստածները շարունակում էին խմել իրենց գարեջուրը, իսկ պանդոկապանը նորից կանգնել էր վաճառասեղանի հետևում և, աչքերը կիսախուփ, ծխում էր իր ծխամորճը։

Երբ հետո ես արդեն պառկել էի փափուկ անկողնում ու ակնոցս դրում մոմակալի կողքին՝ մտածում էի, որ Լուսելը շատ ճիշտ է բնորոշել, թե սա ամենաարտասովոր պանդոկն է։ Ես նոր միայն կռահեցի նաև, թե ինչու արդեն այս կողմերում եղած տիեզերագնացները ոչ մի մանրամասնություն չեն պատմում իրենց տեսածի ու խորհածի մասին։

Եթե ինձ էլ հարցնեն, թե ինչ կար այս պանդոկում, դժվար թե մի որևէ բան պատմեմ, որովհետև երբեք հաճելի չէ բարձրաձայն խոսել այն մասին, թե ինչպես ես ի վերջո հաշվի նստել ինքդ քո խղճի հետ։ Կարևորն այն է, որ ես երբեք կջանամ մարդկանց համոզել, թե բնավ էլ ցանկություն չեմ ունեցել մեկնելու։ Դանայա մոլորակը և նրանք ուղղակի մոլորության մեջ են։

Վերջում, իհարկե, չպատմելով ոչ մի մանրամասնություն, այդ մարդկանց խորհուրդ կտամ հարմար առիթով գոնե մեկ անգամ այցելել Լիբերտաս մոլորակի պանդոկը, որն ամենահիանալի պանդոկն է ամբողջ աշխարհում։



digitised by A.R.A.R.@

# ՆՈՐ ԸՆԿԵՐՈՒՀԻՆ

Մ. ՄԻՐԶԱԲԵԿՈՎԱ

Արտասվում էր փոքրիկ աղջիկն անդադար.
Իր սահնակը թեքվեց. սահեց սարն ի վար:
Բայց ա՜յ թե ինչ... աղջիկն այնպե՜ս զարմացավ
Երբ սահնակը կրկին իր մոտ սլացավ:
Իսկ սահնակին՝ ոսկեգանգուր. կապուտաչ.
Մի ձյունեղեն գեղեցկուհի կար նստած:
Նա շողշողուն մուշտակ ուներ իր հագին.
Արծաթին էր տալիս ձյունը գլխարկին:
Կոշիկները կարմի՜ր-կարմի՜ր ու սիրուն.
Ականջօղերն՝ ինչպես կրակ կայծկլտուն:
Ինչ լավի՜կն է. ասես տիկնիկ նա լինի.
Ջա՞ն. այդպիսի ընկերուհի ո՞վ ունի.
Ծանոթացան նրանք ու մինչ երեկո
Խաղում էին. սահում մեկտեղ սահնակով:
Իսկ երբ մթնեց. գեղեցկուհին այդ խնդուն
Օրո՜ր - շորո՜ր գնաց նորից իրենց տուն:

Թարգմ. Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

Նկ. ՌՈԲԵՐՏ ԱՅՎԱԶՅԱՆԻ

# ԿՈՒԺԸ

(Առակ)

Կուժը մի օր կպավ քարին:
(Տիրոջ աչքը տեսնի բարին).
Ուղիղ երկու կտոր դառավ:
Տերը տարավ,
Վատով-լավով,
Նորոգեց իր կուժը կավով:
Մի օր էլ քար կպավ նրան,
Կժից ունկը մնաց միայն:
Տերը կժին ասաց այսպես.

— Քեզ կպչում են, կոտրվում ես,
Դու կպչում ես, կոտրվում ես.
Էլ քո ցավը ո՞նց քաշեմ ես...

Կուժն էլ թե. — Տե՛ր, կամ վաղ, կամ ուշ,
Ով էլ լինի.
Կկոտրվի,
Թե ինձ նման լինի անուժ...

ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ

digitised by A.R.A.R.@



*Նկ. ՎԱԶԻ ԹԵՎԱՆՅԱՆԻ*

# ՊԱՏԻԿԸ ՀՈԳՆԵԼ Է՞Ր...

*ԼՈՒՍԻԿ ԲԱՌՆԱԿՅԱՆ*

Երբ արևը բարձրանում է մեր քաղաքի վրա, Նորքի բարձրավանդակն աշխատում է, որքան կարելի է, շատ ճառագայթներ խլել։

Աշուն էր։

Նորքի բարձրավանդակն, ասես, ներկվել էր արևի շողերի բոլոր գույներով։

Վեհաշուք ծառերը զուգվել էին դեղին, կարմիր, կապույտ, կանաչ տերևներով։

Փոքրիկ տղան հիացած դիտում էր շուրջը և ձեռքին բռնած աշակերտական տետրի էջերում տեղավորում էր հավաքած գույնզգույն տերևները։

Ծառերի արանքով ձգվող ճանապարհից հանկարծ դուրս եկավ մի մարդ ու մոտեցավ տղային։

— Բարև,—ասաց նա ու շալակից իջեցրեց կապոցը։

Տղայի անունը Գառնիկ էր։ Նա մի քանի քայլ առաջ եկավ, ձեռքով ծածկեց աչքերը, որ արևը թույլ տար նայելու և կանգնեց անծանոթ մարդու դիմաց։

Երկուսն էլ ժպտացին։

Քաղաք մտնելիս առաջին մարդը, որին հանդիպեցի, դու ես,—բարի հայացքով չափելով տղային ոտքից գլուխ, ասաց անծանոթը։

Գառնիկն ուզում էր ծիծաղել, հազիվ կարողացավ զսպել, ախր նա այնքան փոքրիկ էր, որ բոլորը նրան Պստիկ էին ասում։ Իսկ այս քեռին այնպես լուրջ, այնպես հաստատ էր ասում՝ առաջին մա՛րդը, որին հանդիպեցի...

«Մա՛րդ» մտքում մի քանի անգամ կրկնեց տղան ու ձգված կանգնեց տարեց մարդու դիմաց։

— Դու կարո՞ղ ես ինձ բացատրել, թե ինչպես կարելի է կրկես գնալ, —բառերը հատ-հատ ու շատ դանդաղ ասաց նա։

Գառնիկը նախ ամուր սեղմեց թևի տակ դրած տետրերը, հետո շոյեց գանգուր մազերը ու ժպտաց։

Մարդը, որ բավական տարիքով էր, հասկացավ տղայի միտքն ու իսկույն ավելացրեց.

— Չէ՛, բալաս, կրկես չեմ ուզում գնալ, թոռս ապրում է հենց կրկեսի կողքին, ուսանող է։ Մի երկու անգամ եկել եմ քաղաք, բայց միշտ պառավիս հետ։ Նա շատ աչքաբաց է։ Երեկ լավաշ հաց թխեց ու մի քանի գաթա։ Հետո ասաց. «Այ, մարդ, չե՞ս կարող էն երեխուն բաժին տանել»։ Ես էլ ասացի՝ կարող եմ։ Ճանապարհին մեր կոլտնտեսության ավտոմեքենան փչացավ, իջանք, ոտքով եկանք։

Գառնիկն ու գյուղից եկած մարդը քայլում էին կողք-կողքի։ Նրանք արդեն դուրս էին եկել անտառից։

Նորքի բարձրավանդակից քաղաքը երևում է ինչպես բռի մեջ, բայց հեռավոր շենքերը չեն զանազանվում։

Գառնիկը մատը մեկնեց քաղաքի կողմն ու ասաց.

— Դե, ինչպես ասեմ, այստեղից չի՛ երևում։ Ոտքով կգնաս մինչև ավտոմեքենայի կանգառ, կընտես համար տասնմեկ ավտոմեքենան, հետո կհասնես ծածկած շուկա, այնտեղ կիջնես ու կնստես տրամվայ, հա՛, չմոռանաս երրորդ համարը։ Կգնաս երկու կանգառ՝ կիջնես, հենց այդտեղ էլ կրկեսի շենքն է...

Տարեց մարդը նորից ժպտաց, գրպանից հանեց ծխախոտը, վառեց դրեց շրթունքների արանքն ու բռնեց Գառնիկի ձեռքը.

— Շնորհակալ եմ։

Նա գնաց։

Տղան կանգնած տեղից չէր կարողանում պոկվել, նայում էր ու մտածում՝ կգտնի՞ արդյոք։

Հանկարծ տերևներով լի տետրը թևի տակից հանեց, բռնեց ձեռքն ու վազեց։



digitised by A.R.A.R.@

# ԱՌԱԾԸ

ԿԱՐԼԵՆ ՀԱՅԱԳՈՐԾԵԱՆ





Նկարները՝ հեղինակի

Ասում են, որ այս դեպքը տեղի է ունեցել շատ դարեր առաջ:

Մի երեկո Դըմիկոս թագավորը կանչում է իր աստղագուշակին ու հարցնում.

— Ինչպիսի՞ եղանակ է սպասվում վաղը: Մեծ ցանկություն ունեմ որսի գնալու:

Աստղագուշակը մի քանի րոպե ուշադիր զննում է աստղազարդ երկինքն ու պատասխանում.

— Օ՜, մեծ արքա, յոթգլխանի աստղը կծեց հինգգլխանի աստղի ականջը: Դա նշանակում է, որ վաղը հիանալի եղանակ է լինելու և ձերդ մեծության որսորդությունը՝ շատ հաջող:

Հաջորդ առավոտ իշխանների ու պալատականների մեծ խմբով, շեփորներով ու ծնծղաներով, որսորդական շներով ու բազեներով թագավորը դուրս է գալիս ապարանքից ու բռնում որսատեղի ճանապարհը:

Երբ որսորդական ամպախումբը մտնում է մի գյուղի, աղմուկ-աղաղակի վրա խրճիթից դուրս է գալիս մի գյուղացի ու զարմացած կանգնում ճամփեզրին: «Այ քեզ բա՜ն,— ասում է գյուղացին ինքն իրեն: — Այսպիսի եղանակին՝ որսի՞: Թագավորի գլխին խելք չկա, պարզ է, բա այդ անքան իշխաններից ո՞չ մեկի աչքը երկնքի ամպերին չի՞ ընկնում»:

Արքան նկատելով ճանապարհի եզրին կանգնած գյուղացու զարմացական հայացքը, ձայն է տալիս, ձգելով ձիասանձը.

— Ի՞նչ ես ապուշի նման աչքերդ չռել վրաս:

Գյուղացին դողդողալով գլուխ է տալիս:

— Թագավորն ապրած կենա,— կմկմում է նա,— ախր որսի եղանակ չի. ուր որ է՝ անձրև է գալու:

— Անձրև է գալու՞,— ծիծաղում է արքան: — Անմիտ գեղջուկ, քեզ թվում է, թե դու իմ աստղագուշակից ավելի խելոք ես, հա՞:

Թագավորն ու իշխանները մի կուշտ ծիծաղում են շշմած գյուղացու վրա ու շարունակում իրենց ճանապարհը: Իսկ գյուղացին, գլուխն օրորելով, վերադառնում է իր խրճիթը:

Եվ ինչ եք կարծում. դեռ անտառ չհասած՝ զոռոզ թագավորն իր ամբողջ խմբով ընկնում է մի այնպիսի անձրև-կարկուտի տակ, որ, ինչպես ասում են, դառնում է թրջված մուկ: Էլ ի՜նչ որս, ի՜նչ կերուխում: Մի կերպ իրենց գցում են պալատ: Թագավորը ուզածի չափ ծեծել է տալիս իր աստղագուշակին և հրաման արձակում.

— Անմիջապես գտնել ու ինձ մոտ բերել այն գյուղացուն, որն անձրև գուշակեց:

Գյուղացուն գտնում են, քարշ տալիս պալատ ու չոքեցնում արքայի առաջ:

— Դու ի՞նչ գիտեիր, որ անձրև է գալու,— հարցնում է թագավորը:

Խեղճ ու մոլորված գյուղացին, որ միայն փորձանքի մեջ չընկնելու մասին էր մտածում, պատասխանում է.

— Թագավորն ապրած կենա, գժա հիմար գեղջուկիս. ես ոչինչ չգիտեմ: Անձրև գալու մասին ինձ իմ խոզն ասաց:

— Խո՞զը,— ապշում է Դըմիկոս թագավորը:

— Այո, խոզը:



digitised by A.R.A.R.@

# ԱՌԱԾԸ

ԿԱՐԼԵՆ ՀԱՑԱԳՈՐԾՅԱՆ





Նկարները՝ հեղինակի

Ասում են, որ այս դեպքը տեղի է ունեցել շատ դարեր առաջ:

Մի երեկո Դըմիկոս թագավորը կանչում է իր աստղագուշակին ու հարցնում.

— Ինչպիսի՞ եղանակ է սպասվում վաղը: Մեծ ցանկություն ունեմ որսի գնալու:

Աստղագուշակը մի քանի րոպե ուշադիր զննում է աստղազարդ երկինքն ու պատասխանում.

— Օ՜, մեծ արքա, յոթգլխանի աստղը կծեց հինգգլխանի աստղի ականջը: Դա նշանակում է, որ վաղը հիանալի եղանակ է լինելու և ձերդ մեծության որսորդությունը՝ շատ հաջող:

Հաջորդ առավոտ իշխանների ու պալատականների մեծ խմբով, շեփորներով ու ծնծղաներով, որսորդական շներով ու բազեներով թագավորը դուրս է գալիս ապարանքից ու բռնում որսատեղի ճանապարհը:

Երբ որսորդական ամպախումբը մոտենում է մի գյուղի, աղմուկ-աղաղակի վրա խրճիթից դուրս է գալիս մի գյուղացի ու զարմացած կանգնում ճամփեզրին: «Այ քեզ բա՜ն,— ասում է գյուղացին ինքն իրեն: — Այսպիսի եղանակին՝ որսի՞: Թագավորի գլխին խելք չկա, պարզ է, բա այդ անքան իշխաններից ՝ոչ մեկի աչքը երկնքի ամպերին չի՞ ընկնում»:

Արքան նկատելով ճանապարհի եզրին կանգնած գյուղացու զարմացական հայացքը, ձայն է տալիս, ձգելով ձիասանձը.

— Ի՞նչ ես ապուշի նման աչքերդ չռել վրաս:

Գյուղացին դողդողալով գլուխ է տալիս:

— Թագավորն ապրած կենա,— կմկմում է նա.— ախր որսի եղանակ չի. ուր որ է՝ անձրև է գալու:

— Անձրև է գալու՞,— ծիծաղում է արքան: — Անմիտ գեղջուկ, քեզ թվում է, թե դու իմ աստղագուշակից ավելի խելոք ես, հա՞:

Թագավորն ու իշխանները մի կուշտ ծիծաղում են շշմած գյուղացու վրա ու շարունակում իրենց ճանապարհը: Իսկ գյուղացին, գլուխն օրորելով, վերադառնում է իր խրճիթը:

Եվ ինչ եք կարծում. դեռ անտառ չհասած՝ զուռզ թագավորն իր ամբողջ խմբով ընկնում է մի այնպիսի անձրև-կարկուտի տակ, որ, ինչպես ասում են, դառնում է թրջված մուկ: Էլ ի՞նչ որս, ի՞նչ կերուխում: Մի կերպ իրենց գցում են պալատ: Թագավորը ուզածից շատ ծեծել է տալիս իր աստղագուշակին և հրաման արձակում.

— Անմիջապես գտնել ու ինձ մոտ բերել այն գյուղացուն, որն անձրև գուշակեց:

Գյուղացուն գտնում են, բերում տալիս պալատ ու չոքեցնում արքայի առաջ:

— Դու ի՞նչ գիտեիր, որ անձրև է գալու,— հարցնում է թագավորը:

Խեղճ ու մոլորված գյուղացին, որ միայն փորձանքի մեջ չընկնելու մասին էր մտածում, պատասխանում է.

— Թագավորն ապրած կենա, գլխա հիմար գեղջուկիս. ես ոչինչ չգիտեմ: Անձրև գալու մասին ինձ իմ խոզն ասաց:

— Խո՞զը,— ապշում է Դըմիկոս թագավորը:

— Այո, խոզը:



digitised by A.R.A.R.@

Մի պաղուն փաթիլ նստեց նրա քթին: Անսովորությունից Համիկի մարմինը սարսռաց: Նա մատով շոշափեց քիթը: Ջրի մի փոքրիկ կաթիլ մի պահ տատանվեց նրա մատիկի վրա և սահեց ներքև: Համիկը ձեռքի ափով ցանկացավ թիթեռնիկի նման մի ուրիշ փաթիլ բռնել, բայց փաթիլը վախից անմիջապես հալվեց: Տխրեց Համիկը. ուզեց լաց լինել, բայց հիշեց ժպտուն փաթիլներին և ամոթից մինչև ականջների ծայրը կարմրեց:

Երեխաների աղմուկը սթափեցրեց նրան: Նա շուռ եկավ, տեսավ երեխաների կարմրատակած դեմքերը, ուզեց ինքն էլ մասնակցել խաղին: Կամաց ու անվստահ մոտեցավ: „Հանկարծ պատահեց անսպասելին: Կարենը՝ իրենց բակի ամենաչար տղան, տեսնելով Համիկին, ցանկացավ վախեցնել նրան: Մի ակընթարթ, և Համիկը չդիմանալով ձնագնդիկի հարվածին, վայր ընկավ ու անշարժ պառկեց փափուկ-փափուկ ձյան մեջ: Այնքա՜ն հաճելի էր:

Աղմուկով վրա հասան երեխաները:

Համիկը տեսավ, որ ինքն ուշադրության կենտրոնում է, սկսեց ողբալ:

Կարենն խնամքով բարձրացրեց նրան, և բոլորը Համիկին ուղեկցեցին մինչև տուն: Համիկը ցանկանում էր մնալ, թավալվել ձյան մեջ, ձնեմարդ շինել մեծերի պես, բայց քանի որ բոլորն էլ վշտացած էին իր համար, չուզեց ցույց տալ, որ ուրախ է:

Շուտով եկան հայրիկն ու մայրիկը: Ճաշեցին: Բարձրացավ թեթև քամի: Ծառերը կարծես դրան էին սպասում. սկսեցին ճյուղերն իրար քսել: Այս ու այնտեղ մնացած տերևները սվսվացին ու ցած ընկան: Մութը վրա հասավ:

Համիկը հանկարծ հիշեց ճերմակ փաթիլները ու անսահման տխրեց: Չէ՞ որ նրանք վախից հալվում են, կվախենան և մթությունից, կհալվեն, ու ինքն այլևս նրանց չի տեսնի: Անհանգստացած դիմեց մայրիկին: Մայրիկը ժպտաց, շոյեց նրա ոսկեգույն գանգուրները ու ցույց տալով լուսավոր պատուհանը, ասաց.

— Տե՛ս, Համիկ ջան, դրսում վառվում են էլեկտրական լույսերը, փաթիլներն այնպե՜ս են ժպտում: Նրանք մթությունից այլևս չեն վախենա:

Համիկն անչափ ուրախացավ: Համբուրեց մայրիկին և բարի գիշեր ասելով՝ պառկեց անկողնում: Շուտով կոպերը ծանրացան և նա քնեց: Երազում նրան թվում էր, որ ինքն էլ է ձյան փաթիլ դարձել ու ճերմակ շորեր հագած պարում է իր փաթիլ քույրիկների հետ:

ՎԵՆԵՐԱ ՀԱԿՈԲՅԱՆ

Ախուրյանի շրջանի Մարմաշենի միջն. դպրոցի աշակերտ

# ԱՌԱՋԻՆ ԱՆԳԱՄ

Առաջին անգամ երբ դպրոց մտա,
Ականջիս հասավ ղողանջը զանգի.
Երբ նստարանի վրա ինձ գտա,
Թերթեցի էջերն «Այբբենարանի»:

Շատ բան լսեցի, շատ բան հասկացա.
Մանուկ սիրտը իմ կարոտ էր գրքի.
Ու կարծես մի նոր, նոր աշխարհ մտա,
Այնքա՜ն պարզ, ինչպես ցողն արտասուքի:

ՀԱԿՈԲ ՄԱՆԹԱՇ



Պլաստիլինե այս արձանիկները պատրաստել է Երևանի Կրուպսկայայի անվան դպրոցի 2-րդ դասարանի աշակերտ Արայիկ Զարյանը:

# ՄԵՐ ԱՅԳԻՆ

Գեղեցիկ է մեր այգին
Իր ծառերով ահագին,
Հով է անում բոլորին
Ամռան այրող օրերին,
Իսկ աշնանը մեր այգին,
Միրգ է տալիս ամենքին:

ԳԱԳԻԿ ԽԱՉԻԿՅԱՆ

Լենինական, Տոլստոյի անվան դպրոցի 8-րդ դասարանի աշակերտ



digitised by A.R.A.R.@

# ՄՇՏԱՎԱՌ «ԽԱՐՈՒՅԿԸ»



Մեր մայրաքաղաքի փողոցներում հաճախ ենք մենք հանդիպում սև և մուգ դարչնագույն գծերով համազգեստ հագած շատ պատանիների ու աղջիկների։ Իսկ ինչո՞ւ միայն փողոցում. նրանց տեսնում ենք նաև Երևանի շինարարական հրապարակներում ու գործարաններում, իսկ ամենից շատ՝ դպրոցներում, պիոներական հետաքրքիր գործեր կատարելիս։ Եվ ուր էլ որ հանդիպենք նրանց, հարցուփորձ անենք, նրանք միշտ հպարտությամբ կպատասխանեն։

— Խարույկցիներ ենք, ի՞նչ է, չե՞ք ճանաչում։

Խարույկցիներ... Այսօր արդեն հավանաբար ձեզանից շատերը գիտեն նրանց։ Բայց ես ուզում եմ պատմել «Խարույկ» ակումբի մասին նրանց համար, ովքեր ապրում են մեր մայրաքաղաքից հեռու և չունեն իրենց «Խարույկը»։ Գուցե այս ակնարկից հետո շատերը կընդօրինակեն Երևանի պիոներներին...

Ընդամենը երկու տարեկան է «Խարույկ» ակումբը, բայց կատարած գործերն այնքա՜ն շատ են։ Ահա այդ գործերի մասին է, որ ոգևորված ու հուզված պատմում էին Համիկը, Անահիտը, Գևորգը, Հայկը և Գոհարիկը։

— 1964 թվականին էր։ Պիոներական դրուժինաների խորհուրդների նախագահների սեմինար պարապմունքների ժամանակ պիոներ-աշխատողներն ու հին պիոներ-ակտիվիստները մեզ պատմում էին հետաքրքիր հավաքույթների մասին, սովորեցնում էին, թե ինչպես կարելի է ավելի բովանդակալից դարձնել պիոներական առօրյան։

— Մի քանի անգամ այդ զեկուցումները լսելուց հետո ձանձրացանք։ Մտածեցինք՝ ինչո՞ւ միայն զեկուցումներ լսել. եկեք ունենանք մեր ակումբը, կազմակերպենք լավագույն փորձի փոխանակում, հետաքրքիր քննարկումներ, գրական-երաժշտական երեկոներ։

— Այնպես ստացվեց, որ մեր ակումբի առաջին հավաքույթի նախօրյակին Արտեկից վերադարձավ Համիկը։ Նա իր հետ ածխակտորներ էր բերել։ Մեր անդրանիկ խարույկը կազմված էր այդ ածխակտորներից։ Վառվեց առաջին. խարույկը և դրանով էլ ստեղծվեց ակումբի անունը՝ «Խարույկ»։ Քաղաքի մյուս պիոներներից տարբերվելու համար որոշեցինք ունենալ մեր համազգեստը։

— Ակումբն ունի կանոնադրություն։ Ունի նաև իր երգը.

Ողջո՜ւյն, խարո՜ւյկ մեր
բոցավառ,
Ողջո՜ւյն պայծառ քո շողերին,
Ողջո՜ւյն բոսոր և հրավառ
Փողփողացող դրոշներին։

Այս երգի խոսքերը գրել է «մեր բանաստեղծ» Շողիկը։

Խարույկցիներին լսելուց հետո իմ մեջ ցանկություն առաջացավ գոնե մի անգամ մասնակցել նրանց հավաքին։ Եվ ահա եկավ այդ օրը։ Հավաքույթը կոչվում էր «Սրտաբաց զրույց»։ Բոլորը հուզված էին, յուրաքանչյուրն շտապում էր իր միտքն ասել, բացատրել։

— Ինչո՞ւ մինչև այսօր մեր ջոկատները համարակալված են, մի՞թե համարը չի ձանձրացնում մեզ. ես առաջարկում եմ վերացնել ջոկատների համարակալումը,— ասում է Կարինեն։

— Անհրաժեշտ է հավաքույթների տեղը հարմարեցնել թեմային։ Այ, անցյալ տարի մենք մոտակա անտառում հավաքույթ կազմակերպեցինք «Դաշտային ծաղիկները» թեմայով, «Մարտական փառքի արշավ» թեմայով հավաքույթ կազմակերպեցինք ռևոլյուցիայի թանգարանում, իսկ «Հայկական հին դրամների» մասին զրույցը անցկացրինք պատմական թանգարանում։ Այդպիսի հավաքույթները ավելի հետաքրքիր և կազմակերպված են անցնում,— պատմում էր Գայանեն։

«Սրտաբաց զրույցի» ժամանակ Կարոն քաշվել էր մի անկյուն, լսում էր բոլորին՝ մեկ-մեկ ժպտալով, հետո էլ մթագնում էր, գուցե համաձայն չէր։ Բայց չէ, նրան մտահոգում էր մի ուրիշ, գուցե ավելի կարևոր հարց։ Կարոն մտածում էր անկեղծության, մտեր-



digitised by A.R.A.R.@

մության և ազնվության մասին։ Չէ՞ որ դա յուրաքանչյուր գործի հիմքն է համարվում։ Իրենց դպրոցում այդ մտերմությունը չկա, իսկ այստեղ... Այ, առաջին օրը, երբ նա եկավ ակումբ, մի տեսակ տարօրինակ էր. բոլորը զբաղված էին գործով, մի պահ նրան ոչ ոք չնկատեց։ Կարոն ոչ մեկին չէր ճանաչում և ուզում էր դուրս գնալ։ Բայց Անուշիկը մոտեցավ, հարցուփորձ արեց, ինչ-որ հանձնարարություն տվեց։ Աշխատեց Կարոն, կատարեց հանձնարարությունը, ինքն էլ առաջարկություններ արեց ու դարձավ այդ բազմանդամ ընտանիքի մի նոր անդամը։ Այդ օրվանից արդեն շատ ժամանակ է անցել։ Կարոն դարձել է ակումբի էստրադային նվագախմբի ղեկավարը

«Խարույկը» ունի իր հրաշալի սովորույթները։ Յուրաքանչյուր խարույկ-հանգստի ժամանակ, երբ կրակե լեզուները բարձրանում են վեր և ջերմացնում բոլորին, երբ բոլորը երգում են իրենց սիրելի «Ողջույն, խարույկ» երգը, «Անտեսանելի միկրոֆոնը» հայտարարում է.

— Ուշադրությո՛ւն, ուշադրությո՛ւն... Խարույկի մոտ են հրավիրվում այս ամսին ծնված մեր հոբելյարները... Ակումբը ողջունում և շնորհավորում է ձեզ։

Հետո մատուցվում են փոքրիկ, բայց շատ սիրելի հուշանվերներ։ Հայկական կավե սափորիկները այսօր կան յուրաքանչյուր խարույկցու տանը։

Իսկ ամեն տարի սեպտեմբերին խարույկցիները հանդիսավոր հրաժեշտ են տալիս 8-րդ դասարանցիներին, շնորհավորում են լենինյան կոմերիտմիության շարքերն ընդունվածներին։

«Խարույկը» միայնակ չէ, նա ունի շատ բարեկամներ Գորիսում, Ղափանում, Թբիլիսիում, Կիևում, Էստոնիայում։ Իսկ հեռավոր Հարավսլավիայի Վելիմիր Տոմանովիչի անվան երիտասարդական միության անդամները, որոնք 1964 թվականին այցելեցին խարույկցիներին, ակումբի պատվավոր անդամներն են։

Ուր էլ լինեն խարույկցիները ամենուր նրանց ընդառաջում են, օգնում, աջակցում։

Վառվում է խարույկը, գի-

նում բոլոր պիոներ-հրամանատարներից, որոնք իրենց սովորածը տանում են դպրոց, սովորեցնում ընկերներին։ Մեղվի փեթակի նման ամբողջ տարին եռում է աշխատանքը ակումբում։ Նրանք սովորում են նոր երգեր, բանաստեղծություններ, պարեր, կազմակերպում են



գրական-երաժշտական վիկտորինաներ։ Մի պահ թվում է, թե այդ բոլոր գործերը կատարվում են առանց որևէ ղեկավար ձեռքի։ Բայց հենց այստեղ է, որ չպետք է մոռանանք մի բան, անծանոթ վայրում առանց կողմնացույցի հնարավոր չէ կողմնորոշվել։ «Խարույկի» աշխատանքներում այդ դերը կատարում է ակումբի ղեկավարը, բոլորի կողմից սիրված Լիզա Սիմոնյանը։

Թող ավելի բարձր և շատ լուսավորեն «Խարույկի» կրակները, թող նրա բոցը հասնի և ջերմացնի մեր հանրապետության ամենահեռավոր շրջանների և գյուղերի պիոներներին։



ԿԱՏՅԱ ՍԱՐԳՍՅԱՆ

Լուսանկարները՝
ԶԱՎԵՆ ԲՇՏԻԿՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@



# Սկսնակ շախմատիստի ԴՊՐՈՑ

դասավանդում է աշխարհի չեմպիոն ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ

## ՆԱՎԱԿԱՅԻՆ ԽԱՂԱՎԵՐՋԵՐ

Այժմ եկեք ծանոթանանք ավելի բարդ օրինակի հետ: Առաջին դիագրամում պատկերված է 1924 թ. Նյու-Յորքի միջազգային տուրնիրում խաղացած Կապաբլանկա-Տարտակովեր պարտիայի դիրքը:




Աշխատենք վերլուծել և գնահատել դրությունը: Սև նավակը նպաստավոր դիրք է գրավում, պաշտպանելով «c7»-ում գտնվող զինվորը և հարձակվելով «c3» սպիտակ զինվորի վրա: Դժվար չէ համոզվել, որ «c3» զինվորը վերցնելուց հետո, սև նավակը հնարավորություն կունենա գրավել «c4» դաշտը՝ միաժամանակ հարձակվելով «a4» և «d4» զինվորների վրա:

Այնքան էլ հաջող դիրք չի գրավում սև արքան: Նա «մեկուսացված» է 8-րդ հորիզոնականի վրա, որը, ինչպես մենք արդեն գիտենք, վտանգի հետ է կապված: Ճիշտ է, առայժմ նա իրեն անվտանգ է «զգում»:

Արդյո՞ք ստեղծված դրությունը գնահատենք սևերի օգտին: Շտապել պետք չէ: **Պարտիայում որքան էլ բացարձակ նպաստավոր լինի կողմերից մեկի դիրքը, հնարավոր կլինի դրությունը ճիշտ գնահատել միայն այն բանից հետո, երբ ակնհայտ կդառնան մրցակցի պաշտպանության բոլոր հնարավորությունները:**

Տեսնենք, թե ինչ կարող են անել սպիտակները: Նրանց նավակը 7-րդ հորիզոնական գիծն է գրավում, որը նավակային վերջնախաղերում մեծ նշանակություն ունի: «g5» անցողիկ զինվորը նույնպես պետք է գնահատել իբրև առավելություն: Եթե խնդրին մոտենանք սոսկ ձևականորեն, դիրքը մոտավորապես հավասար պետք է գնահատել, թեև սևերի հնարավորությունները գերադասելի են:

Իզուր չէ, որ կուբացի հանճարեղ շախմատիստ Խոզե Ռաուլ Կապաբլանկան շախմատի պատմության մեջ մնաց ոչ միայն իբրև աշխարհի չեմպիոններից մեկը, այլև իբրև մի շախմատիստ, որը պրակտիկայում ստեղծեց բազմաթիվ պարտիաներ, որոնցում վերջնախաղերի վարպետորեն վարումը գտնվում է բացառիկ բարձր մակարդակի վրա:

Կապաբլանկայի խաղավերջերի շատ ձևեր (պրիոմներ)՝ նրա ժամանակակիցների համար հայտնագործություններ էին: Այդ խաղաձևերը մտան շախմատի դասագրքերի մեջ և դարձան փարոսներ այն շախմատիստների համար, որոնք ձգտում էին վարպետություն ձեռք բերել վերջնախաղերում:

Այն, ինչ որ տվյալ, պարզ թվացող դիրքում գտավ Կապաբլանկան, հիացմունքի է արժանի:

1. Աg3

Տարօրինակ է թվում: Արքան իր հեռևակը բախտի քմահաճույքին է թողնում:

1 . . . Ն : c3+
2. Աh4 Նf3

Այժմ կորչում է մեկ սպիտակ զինվոր ևս: Կասկածից վեր է, որ իր ժամանակի ուժեղագույն գրոսմայստերներից մեկը՝ Տարտակովերը այստեղ արդեն կասեց սպիտակների մտահղացման ողջ վտանգը: Արքան «ուղևորվում է» դեպի հակառակորդի թիկունքը, որից հետո ակտիվացած սպիտակ արքան ու նավակը ուժեղ անցողիկ զինվորի հետ կսպառնան պարտիայի ելքը վճռել իրենց օգտին:

Սևերի վտանգավոր դրությունը պարզ երևում է հետևյալ տարբերակում: 2... Նc1, թվում է, թե այս քայլը կխանգարի սպիտակ արքայի հետագա առաջխաղացմանը, սակայն... 3. Աh5 (համարձակորեն դեպի առաջ) Նh1+ 4. Աg6 Ն : h7 5. Ա : h7, և պաշտպանված սպիտակ զինվորը անարգել թագուհու է փոխարկվում:

3. g6 Ն : f4+
6. Աg5 Նe4

Նավակը անհապաղ պետք է շտապի դեպի 8-րդ հորիզոնական գիծը, որպեսզի պաշտպանի իր արքային: 4... Ն : d4 5.Աf6 քայլերից հետո մատից խուսափելու համար սևերը ստիպված կլինեին տալ նավակը սպիտակների անցողիկ զինվորի փոխարեն: 5... Աe8 6.Նh8+ Աd7 7.g7: Եթե 5... Աg8 6. Նd7, ապա սևերը մատ կստանան:

5. Աf6 Աg8
6. Նg7+ Աh8
7. Ն : c7 Նe8
8. Ա : f5



digitised by A.R.A.R.@

Սպիտակները ետ շահեցին զոհաբերված զինվորները՝ պահպանելով ֆիգուրների ուժեղ դիրքերը: Սև զինվորների «բերքահավաքը» շարունակվում է:

8... Նe4
9. Աf6! Նf4
10. Աe5 Նg4
11. g7+! Աg8

Համոզվեցեք, որ 11......Ն:g7 12. Ն:g7 Ա:g7 13. Ա:d5 քայլերից հետո սպիտակները կհաղթեն:

12 Ն:a7 Նg1
13. Ա:d5 Նc1
14. Աd6 Նc2
15. d5 Նc1

Միաժամանակ սև նավակը չի կարող մրցել սպիտակների համերաշխ գործող ֆիգուրների հետ:

16. Նc7 Նa1
17. Աc6 Ն:a4
18. d6

Սևերը անձնատուր եղան, որովհետև հարկադրված են նավակը փոխանակել այդ զինվորի հետ:

Բացառիկ ուսանելի է այս խաղավերջը: Քայլ առ քայլ մի քանի անգամ ուշադիր վերլուծեք տվյալ խաղավերջը, մինչև որ ձեզ համար հասկանալի դառնա սպիտակների յուրաքանչյուր գրոհող քայլը:

Ահա և մի ուրիշ վերջնախաղ: Չնայած ուժերը փոքրաթիվ են, խաղավերջը շատ հետաքրքիր է և ուսանելի:




Այստեղ պատկերված է անցյալի մի այլ մեծ շախմատիստ Էմանուել Լասկերի էտյուդը:

Մրցող անցողիկ զինվորներին միայն մեկ քայլ է մնում, որպեսզի փոխարկվեն թագուհու: Նավակները նույնանման դիրքերն են գրավում 2-րդ և 7-րդ հորիզոնական գծերի վրա: Արքաների դրությունների տարբերությունը չնչին է՝ սպիտակը պաշտպանում է իր անցողիկ զինվորին: Ճիշտ է, չի երևում, թե ինչպես կարելի կլինի օգտագործել տվյալ հանգամանքը: Հենց որ արքան նահանջի, ճանապարհ ազատելով թագուհու «թեկնածուի» համար, սև նավակը կսկսի շախ հայտարարել և արքային հեռացնելով փոխարկման դաշտից՝ կրկին «c» գիծը կգրավի: Այնպես որ, թվում է, թե խաղը ոչ-ոքի պետք է ավարտվի:

Եկեք վերլուծենք դիրքը: Միգուցե մեզ կհաջողվի պարզել էտյուդի էությունը:

1. Աb8 Նb2+ 2.Աa8 Նc2: Առայժմ ամեն ինչ ընթանում է այնպես, ինչպես մենք ենթադրում էինք: 3. Նh6+: Պարզվում է, որ անիմաստ թվացող այս քայլը բավականին «թունավոր է»: Եթե սևերի արքան անզգուշաբար նահանջի «b5», ապա սպիտակների Աb7 քայլից հետո սևերը «b» գծով «փրկարար» շախից կզրկվեն: Հետևաբար, սև արքան պետք է նահանջի «a5»:

3. Աa5 4.Նh7 Նb2 5.Աa7 Նc2 6.Նh5 Աa4: Իհարկե, դուք չեք մոռացել, որ «b» գիծը փակել չի կարելի՝ կհետևի՝ 6...Աb4 7. Աb7:

7. Աb7 Նb2+ 8. Աa6 Նc2 9. Նh4 Աa3 10. Աb6 Նb2+ 11. Աa5 Նc2: Միգուցե ձեր մեջ եղած «անհամբերներին» այս բոլորը ձանձրալի է՝ սպիտակները «անիմաստ» շախեր են հայտարարում և, բացի դրանից, նրանց արքան միայն անցողիկ զինվորից հեռացավ: Սակայն խնդրում եմ համբերություն ունենաք և հիշեք, որ շախմատում հաջողությունը ժպտում է միայն համառներին ու համբերատարներին:

12. Նh3 Աa2 13. Ն:h2!!: Ահա և վերջը: Առաջին հայացքից սպիտակների մանևրները «անիմաստ» էին թվում, բայց իրականում դա նուրբ խաղ էր:

13... Ն:h2 14. c8Թ քայլերից հետո սպիտակները ձեռք են բերում հաղթանակի հասնելու ուժերի հարաբերակցություն:

Գ. Կասպարյան

## Նշանավոր մարդկանց կյանքից

*Չափազանց առատաձեռն մարդ էր հայ մեծ դերասան Հովհաննես Աբելյանը և սիրում էր հյուրասիրել ուրիշներին, մանավանդ երիտասարդ դերասաններին: Սակայն ծայր աստիճան բծախնդիր էր իր աշխատանքի վարձը ստանալիս:*

*Մի անգամ աշխատավարձ տալիս գանձապահուհին մոռանում կամ չնչին բան համարելով՝ պահում է 20 կոպեկը:*

*— Իսկ 20 կոպեկը ինչու՞ չես տալիս, աղջիկս, թե՞ կարծում ես, որ այդ ես չեմ վաստակել,— դիմում է Աբելյանը:*

*Գանձապահուհին շփոթված հանձնում է 20 կոպեկանոցը:*

*— Ա՛յ այդպես, — ասում է արտիստը, վերցնում մետաղադրամը և դնում գրպանը: Ապա մյուս գրպանից հանում է հարյուրանոց մի թղթադրամ և մեկնում գանձապահուհուն.— Իսկ հիմա, աղջիկս, առ այս հարյուրանոցը, մի հարմար բան գնիր Աբելյանից քեզ նվեր...*

— Գ. ԱՐԱՋՅԱՆ



digitised by A.R.A.R.@




## ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ԿԱՎԻՃԸ

Բարեկամության ակումբի պարապմունքի օրն էր։ Երեխաները հավաքվել ու սպասում էին իրենց լավագույն բարեկամին՝ պատմության դասատու ընկեր Ֆահրադյանին։

— Երեխաներ, ով չի գնել այս գրքից, թող շտապի, թե չէ մի երկու օրից հետո այլևս չեք ճարի,— ասաց Արտակը և ցույց տվեց մի գիրք, որի վրա գրված էր «Կախարդական կավիճը»։

— Ես արդեն գնել եմ, —ասաց Վարդգեսը։

— Ես էլ, ասաց Մարիամը։

— Ես էլ, ասաց Արմենը։

— Բայց գնելը բավական չէ, ա՛յ, ես արդեն կարդացել եմ, — նորից խոսեց Արտակը, անչափ հետաքրքիր է, ճիշտ որ կախարդական։

— Ես էլ եմ կարդացել, կուզես՝ հարցեր տուր, ասաց Վարդգեսը։

— Ես էլ,— վրա բերեց Մարիամը։

Իսկ Արմենը լռեց, ու նրա աչերը շիկնեցին. նա գիրքը դեռ բոլորովին բաց չէր արել։

— Արտակ, դու այնպես լա՜վ ես պատմում, դե մի քիչ պատմիր հետաքրքիր տեղերից։

— Ո՞ր մեկը պատմեմ, — սկսեց Արտակը,— բոլոր գլուխներն էլ հետաքրքիր են։ Թեև փիպակը հեքիաթային է, բայց նկարագրվող դեպքերը վերցված են ժամանակակից կյանքից։

Փոքրիկ Յունը պատահաբար գտնում է մի կտոր կավիճ, որը ընկել էր կախարդուհի Ֆրու Մունսենի գրպանից։ Քիչ հետո նա ցանկապատի վրա նկարում է մի տղա։ Եվ, ա՜յ քեզ բան. Յունը իր աչքերին չի հավատում, երբ իր խզմզած նկարը հանկարծ դառնում է մի իսկական տղա, ճիշտ իր նկարածի նման և ցանկապատից ցած թռչելով ասում.

— Ողջույն։ Իմ անունը Սոֆուս է։

Մտածելով, որ լավ է ընկերոջ հետ շրջել, քան մենակ, Յունը իսկույն ընկերանում է Սոֆուսի հետ։

Քիչ հետո Յունն ուզում է մի հատ էլ ճագար նկարել, բայց Սոֆուսը չի թողնում, որովհետև ինքը վախենում էր ճագարներից։

— Գիտե՞ս ինչ, ավելի լավ է, մի մեծ դուռ նկարիր,—ասում է Սոֆուսը։

Յունը նկարում է մի դուռ։ Եվ, ա՜յ քեզ հրաշք, նկարը իսկույն ևեթ դառնում է մի իսկական մեծ դուռ։ Իսկ երբ նրանք ներս են մտնում այդ դռնով, ընկնում են մի հեքիաթային մշտադալար այգի։ Այգում խոխոջում էր զուլալ առվակը, կային խոշոր-խոշոր համեղ պտուղներ, երփներանգ, վառվռուն ծաղիկներ, իսկ եղևնու ճյուղերից կախված էին խաղողի ողկույզներ... կային և բազմատեսակ գազաններ ու կենդանիներ, և գայլերն այստեղ այնքան խելացի էին, որ չէին դիպչում ուլիկներին, թեկուզ քաղցից ոռնային...

— Ճիշտ է, ասաց Մարիամը,—իսկ երբ Սոֆուսը ջութակ է նվագում, գազանները հուզմունքից արտասվում են, նրանցից շատերն էլ սկսում են պարել...

—Բայց այդ Սոֆուսը շատ հետաքրքիր է, չէ՞,—ասաց Վարդգեսը։—Քանի որ ինքը կավճանկարից է առաջացել, հենց որ ոտքը ջուրն է ընկնում, ոտքից է զրկվում, երբ ձեռքի վրա ջուր է թափվում, ձեռքից է զրկվում, և Յունը ստիպված է լինում կրկին նկարելով վերականգնել նրա մարմնի կորցրած մասերը։

— Այո,—ասաց Արտակը, և զարմանալին այն է, որ այդ Սոֆուսը թեև վախկոտ է ու թույլ, բայց քաջ և ուժեղ է ձևանում և ինչպես այն բոլոր երեխաները, որոնք իրենցից մի բան չեն ներկայացնում, բայց մեծամիտ են, Սոֆուսն էլ մեծ կարծիք ունի իր մասին։ Իսկ Յունը, որ ավելի ամրակազմ է ու համարձակ, համեստ է ու ճշմարտախոս։ Բայց երկուսով էլ ունեն մի ընդհանուր թերություն. նրանք աշխատում են հեշտ ճանապարհով հասնել երջանկության և գնալով ավելի ու ավելի մեծ փորձանքների մեջ են ընկնում...



Եվ Արտակը ոգևորված պատրաստվում էր պատմել Յունի ու Սոֆուսի հետագա արկածների մասին, բայց այդ պահին եկավ ընկեր Ֆահրադյանը ու նրա խոսքը կիսատ մնաց։

Երեխաներ, նորվեգացի կին գրող Սինկեն Հոպի «Կախարդական կավիճը» հեքիաթ-վիպակը իրոք որ լի է հետաքրքրաշարժ արկածներով ու զվարճալի դեպքերով։ Կարդացեք անպայման։

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

## ԱՎՏՈՄԵՔԵՆԱՅԻ ՔԱՐԱՆՁԱՎՆԵՐՈՒՄ

Մելլին լիլիպուտների երկրից էր։ Բայց ոչ ճեր տեսած սովորական լիլիպուտների, այլ՝ ամենափոքր, որոնց համար, ասենք, մեր սովորական մուկը ահռելի գազան է թվում։

Մելլին փախել էր Լիլիպուտիայից։ Փախել էր, որովհետև կատարել էր պետական մի մեծ հանցագործություն. ծուն կոտրել էր բութ ծայրից։ Բայց ոչ թե հենց այնպես, քմահաճույքի համար, այլ որպեսզի այդ ծվի կըճեպով ինքնագնաց նավակ պատրաստեր։ Եվ ահա, մահապատժից խուսափելու համար, նա հենց իր պատրաստած նավակով էլ հեռացավ իրենց երկրից։

Մելլին չափազանց ուսումնատենչ էր։ Նրան շատ էին հետաքրքրում հատկապես տեխնիկական սարքավորումները։ Եվ կարծես բախտի բերմամբ, այնտեղ, ուր նա ցամաք դուրս եկավ, առաջին բանը, որ տեսավ, դա արագ սլացող մի ավտոմեքենա էր։

Մելլին չգիտեր, թե ինչ է ավտոն, ուստի այդ շարժվող սարի չափ սև հրեշը, իր հսկայական անսովոր աչքերով շատ տարօրինակ թվաց և սարսափեցրեց նրան։ Ավտոմեքենայի հենց միայն շարժիչը Լիլիպուտիայի թագավորի պալատի չափ էր։ Մելլին իրեն այնպես կորցրեց, այնպես շփոթվեց, որ քիչ մնաց ճզմվեր ավտոմեքենայի անիվի տակ։ Բայց հենց այդ պահին ավտոն ուժգին ճզզոցով ճիշտ Մելլիի քթի մոտ կանգ առավ։ Հետո նրա կողը բացվեց, ու այնտեղից դուրս եկավ մի մարդ, որը մի քանի անգամ ավելի մեծ հսկա էր, քան Լիլիպուտիայում տարածված հեքիաթի Գուլիվերը, որին լիլիպուտները Կուինբուս Ֆլեստրին էին անվանել, այսինքն մարդ սար։




Մելլիի համար անհավատալի հեքիաթը իրականացավ։ Նա տեսավ. մի նոր իսկական հսկա։

Կուինբուս Ֆլեստրինը մոտեցավ Մելլիին ու իր վիթխարի մատներով, բմբուլի պես բարձրացրեց նրան։ Հենց այդ պահին, հրեշը, որով նա եկել էր, շատ տարօրինակ ձևով փռշտաց։ Հսկան մոտեցավ, ազատ ձեռքը տարավ դեպի հրեշի գլուխը և բաց արեց նրա՝ սնդուկի կափարիչի նմանվող վերին մասը։

Մելլիի աչքերի առջև բացվեց դղյակ հիշեցնող մի բոլորովին անսպասելի տեսարան։ Եվ նա թռչելով հսկայի ձեռքից թաքնվեց դղյակ հիշեցնող այդ շարժիչի մեջ։ Այդ օրը սկսվեց Մելլիի առաջին ճանապարհորդությունը շարժիչի քարանձավների, ձորերի, լեռների, բազմաթիվ գետերի ու լճերի լաբիրինթոսում։ Սակայն Մելլին առաջին անգամն էր այդտեղ լինում, ուստի անզգուշորեն այրվածքներ ստացավ և վիրավորվեց։ Լավ էր, որ ավտոմեքենան դարձյալ մի փռշտոցով ստիպեց Կուինբուս Ֆլեստրինին որոնել ու գտնել վիրավոր Մելլիին։

Կուինբուս Ֆլեստրինի աղջկա հոգատարության շնորհիվ, Մելլին ոչ միայն ապաքինվեց, այլև կարճ ժամանակամիջոցում սովորեց նրանց լեզուն և սկսեց իր ճանապարհորդությունները ավտոմեքենայի նույնիսկ ամենանեղ գլանների միջով, իր հետ տանելով այդ գիրքը ընթերցողին։

Երեխաներ, եթե ուզում եք ծանոթանալ ավտոմեքենայի բոլոր մասերի հետ և իմանալ, թե հետագայում ինչ պատահեց Մելլիին և ինչու նա ստիպված եղավ այդտեղից էլ փախչել, կարդացեք Լազար Բերմանի «Ճանապարհորդություն ավտոյի աշխարհում» հետաքրքիր գիրքը։

*ԱՍՅԱ ՍԱՀԱԿՅԱՆ*

## Հանելուկներ

*Ջուր է խմում,*
*Հուր է տալիս,*
*Տես, որտեղից*
*Ուր է գալիս։*

*Գլուխն՝ ապակի*
*Վիզ ունի բարակ,*
*Ոտքերը՝ պարան,*
*Լեզվակը՝ կրակ։*

*ՎՐԵԺ ՎԱՐԴՈՒՆԻ*

*Կանգնից ցմփորն*
*Առանց ոտի,*
*Ոտից գլուխ*
*Կապած գոտի։*

*ՍԻՐՎԵՆ ԱՐՇԱԿՈՒՆԻ*



digitised by A.R.A.R.@



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*

*Նկ. ԱՆՈՒՇԱՎԱՆ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*

*Խաղեր*

# ԵՐԲ ՆՎԱԳԻ ՇՎԱԽՈ




Սուրիկը բակում հավաքված երեխաներին բաժանեց երկու հավասար կողմերի և յուրաքանչյուրին տվեց մի ցատկապարան:

— Այժմ, — ասաց նա, — երբ Վաչիկը սկսի նվագել, դուք ցատկապարանով կըշկոտեք: Լավ լսեք նվագը. երբ արագ նվագի, արագ կցատկեք, իսկ երբ դանդաղ նվագի, դանդաղ կցատկեք: Երբ դադարեցնի նվագը, բոլորդ վազեք և կանգնեք ձեր տեղերը: Որ շարքը արագ և ուղիղ շարվեց, նա էլ կհաղթի:

Երկու անգամ այս խաղը կըրկնելուց հետո, Սուրիկը երեխաներին առաջարկեց նստել աթոռներին՝ միմյանցից 20- 25 քայլ հեռավորության վրա: Երբ երեխաները նստեցին, Սուրիկն ասաց.

— Սուլիչի ձայնը լսելուն պես ցատկապարանով վազում եք և փոխում ձեր տեղերը. կհաղթի այն շարքը, որը շուտ կհասնի հակառակորդի աթոռներին:

Լսվեց սուլիչի ձայնը, և խաղը սկսվեց:

Խաղի ժամանակ Վաչիկը հայկական աշխույժ պարեղանակներ էր նվագում:

Այս խաղը նպատակահարմար է ցածր դասարանցիների համար: Խաղին կարող են մասնակցել 12-40 հոգի:

## ՍՏՈՒԳԻՐ ՔՈ ԴԻՏՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

| | | | |
|---|---|---|---|
| 7 | 22 | 12 | 3 |
| 19 | 5 | 11 | 10 |
| 24 | 1 | 8 | 17 |
| 13 | 20 | 14 | 16 |

| | | | |
|---|---|---|---|
| 19 | 15 | 11 | 3 |
| 22 | 2 | 9 | 17 |
| 4 | 14 | 18 | 23 |
| 24 | 20 | 21 | 5 |

| | | | |
|---|---|---|---|
| 4 | 9 | 14 | 1 |
| 7 | 6 | 10 | 18 |
| 12 | 13 | 8 | 23 |
| 21 | 2 | 16 | 15 |

*Ժամացույցի վրա նշիր ժամը և, ուշադիր նայելով տվյալ երեք քառանկյունի աղյուսակներին, պատասխանիր, թե որ թիվն է կրկընվում բոլոր երեք քառանկյունիներում և որ թիվն է գրված միայն մեկ քառանկյունու մեջ:*

*Եթե մեկ րոպեի ընթացքում կարողանաս ճիշտ պատասխանել հարցերին, ուրեմն քո դիտողականությունը լավ է:*

*Քեզ ստուգելուց հետո նույնը առաջարկիր ընկերոջդ:*

*Առաջարկ՝ ԳԵՎՈՐԳ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*


Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Ա. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.

**„Пионер“** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, Հեռախոսներ՝ 2-11-83, 2-59-06.*

*ՎՖ 06765, Պատվեր՝ 232, Տպաքանակ՝ 22 000, Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 9/III, 1966 թ., ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ. № 91.*

Գինը՝ 20 կ.




digitised by A.R.A.R.@

# ԷՍՏԱՖԵՏԱ ԹԵՆԻՍԻ ՌԱԿԵՏՈՎ.

Մեր ջոկատի հավաքույթից հետո ես պետք է խաղ կազմակերպեի: Դրա համար ես օղակները շարք կանգնեցրի: Յուրաքանչյուր օղակի առաջին պիոներին ավեցի թենիսի մեկ ռակետ և վոլեյբոլի գնդակ դրեցի ռակետի վրա: Երբ բոլորը պատրաստ էին, ես ազդանշան ավեցի:

Շարքերի առաջին պիոներները արագ քայլելով շարժվեցին առաջ և, շրջանցելով քիչ հեռու (10-15 քայլ) դրված աթոռները, վերադարձան և ռակետն ու գնդակը հանձնեցին հաջորդ պիոներին:

Երբ հերթը հասավ վերջին պիոներներին, նրանք աթոռները շրջանցելուց հետո շտապեցին ինձ մոտ: Հաղթեց այն օղակը, որն առաջինը ինձ հանձնեց ռակետն ու գնդակը:

Խաղի ժամանակ, կարելի է նաև վազքով շրջանցել աթոռները, միայն այնպես, որ գնդակը չընկնի ռակետի վրայից: Ռակետը պետք է բռնել մեկ ձեռքով՝ բռնակից: Այս խաղին կարող են մասնակցել 10-30 հոգի:

ՎԱՐԴԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆ

(Հայկական ՍՍՌ վաստակավոր ուսուցիչ)

## Պատասխանում ենք

ՊԻՈՆԵՐ № 12 և № 1

«ՎԻԿՏՈՐԻՆԱ»— 1. Մուրրեյ գետը (Ավստրալիա) կարճ է իր վտակ Դարլինգից, Միսսիսիպին՝ Միսսուրի վտակից: 2. Բայկալ: 3. Անտարկտիդա: 4. Պրժևալսկին: Տիբեթի հյուսիսում: 5. Կրետե (Եվրոպա) և Կիպրոս (Ասիա) կղզիները: 6. Դանիա:

«ՈՐ ԹՎԵՐՆ ԵՆ»— 5-ը և 2-ը կամ 7-ը և 4-ը:

ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ — Սեղան, եղյամ, ջուր:

«ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ» Այդ դիմանկարները կոչվում են Ֆայումյան դիմանկարներ և առաջին անգամ հայտնաբերվել են Ֆայում օազիսում:

Դիմանկարները եգիպտական ժողովրդի արվեստի նմուշներից է (13-14 դար մ. թ. ա.):

«ՔԱՆԻ՞ ՁՈՒ ԿԱՐ»— 301 ձու:

ՃԻՇՏ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ ԵՆ՝

Գագիկ Դարբինյան (Ղափան), Սուսաննա Կարապետյան, Անժելա Հովհաննիսյան, Վարդիկ Ամիրխանյան (Սիսիան), Վարդուհի Խաչյան, Ալեքսան Կիրակոսյան (Ալավերդի), Անժելա Բաբայան, Հովհաննես Ջհանգիրյան, Նվարդ Գալոյան, Գագիկ Բաբաջանյան (Երևան), Ջեմմա Մխիթարյան (Թումանյան րայոն), Շագիկ Շահբազյան (Աշտարակ), Նունե Առաքելյան, Արփա Հովհաննիսյան, Վերա Խաչատրյան (Կիրովական), Կարեն Ալեքսանյան (Կամո) Հովհաննես Նազարյան, Բենիկ Քոչարյան (Արթիկ), Թերեզա Իսկանդարյան (Իջևան), Համլետ Բաբայան, Հակոբ Հակոբյան, Մանուշակ Ալեքսանյան, Էլմիրա Պողոսյան (Արտաշատ), Ռուբիկ Հակոբյան (Լենինական), Արփիկ Պետրոսյան (Սպիտակ), Զոյա Սարգսյան (Մեղրի), Էլյա Սարգսյան (Ստեփանավան), Լևոն Հովհաննիսյան (Սևան), Նազիկ, Մհեր և Լյովիկ Նիկողոսյանները (Ղուկասյան, գ. Բեֆիկ), Նազիկ Արզումանյան (Ախուրյան, գ. Բենիամին), Գեղամ Գասպարյան (Թալին, գ. Աշնակ):

## ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ


2


1

**1.** Այս նկարի հեղինակը ստեղծագործել է Նապոլեոնյան Ֆրանսիայում և հայտնի է «Մարատի սպանությունը», «Հորացիոսների երդումը», «Նապոլեոնի անցումը Ալպերից» ու մի շարք այլ նկարներով, որոնց թեման վերցված է պատմությունից: Նրա վրձնին են պատկանում նաև բազմաթիվ դիմանկարներ, որոնց մեջ սա լավագույններից մեկն է:

Ո՞ր նկարչի աշխատանքն է այս դիմանկարը և ինչպե՞ս է կոչվում:

**2.** Սա նկարչի դստեր դիմանկարն է: Նկարիչը վրձնել է նաև մի շարք այլ դիմանկարներ ու ինքնանկարներ, բայց ռուսական նկարչության մեջ նա հայտնի է որպես կենցաղային ժանրի հիմնադիր: Նկարիչը իր ողջ ստեղծագործական ուժն ու եռանդը նվիրել է գյուղական կյանքի պատկերմանը: Նրա նշանավոր նկարներից են «Կալվածատիրուհու առավոտը», «Հունձը», «Հունձամառ» և այլ գործեր:

Ո՞վ է այս դիմանկարի հեղինակը և ո՞ր դարում է նա ստեղծագործել:

ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ

digitised by A.R.A.R.@

